# ՁՄԵՌԸ ԱՇՈՏԻԿԵՆՑ ՊԱՐՏԵԶՈՒՄ

ԳԱՐԻԿ ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Ձյունն է գետնին իջնում կամաց,
Էլ չի երգում առուն,
Մերկ թթենին ձյան տակ քնած
Երազում է գարուն...

Ա՜խ, մրսում է զույգ ոտիկը,
Ո՞նց դիմանա ցրտին.
Մոռացել է Աշոտիկը
Բույն պատրաստել ծտին:

Տեսեք, սահնակ է նա քշում՝
Տաք հագնված հիմի,
Ու կատակ են նրան թվում՝
Ձմեռ, ձյուն ու քամի...

Ուր էր՝ հայրիկը մոռանար
Նրան հագուստ առնել,
Աշոտիկը դրսում մնար
Ու գոնե քիչ սառեր.

Այն ժամանակ նա կհիշեր
Մրսած ու խեղճ ծտին,
Իսկույն նրան բույն կշիներ
Ու կփրկեր ցրտից:

Նկ. Հ. ԳԱԲՈՒՋՅԱՆԻ

# Ձմեռ Պապին հյուր գնային

Գ. ՖԻԼՈՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Երկու եղբայր կային, մեկի անունը Հայկ էր, մյուսինը՝ Արամ։ Նրանք բոլորի հետ էլ մտերիմ էին՝ և մարդկանց, և կենդանիների, և գազանների։ Բայց ամենից շատ մտերմացել էին Գարնան, Ամռան ու Աշնան հետ։

Գարունը նրանց պայծառ արև էր բերում, թարմ օդ ու խաղեր, շոգ Ամառը՝ մրգեր, անտառում զբոսնելու և գետում լողանալու հաճույք, իսկ ոսկե Աշունը մեղմում էր Ամռան տապը, արևին քնքուշ ու զուրեկան դարձնում, համեղ մրգերով ուրախացնում նրանց։

Մի անգամ, երբ արդեն Աշնան հեռանալու ժամանակն էր, նա տղաներին ասաց.

— Էս գիշեր Ձմեռ պապն ինձ այցի էր եկել, կարգադրեց, որ պատրաստվեմ հեռանալ։ Ես նրան չեմ կարող հակառակել, պիտի հեռանամ։ Նա ինձ ասաց, որ ձեզանից շատ է նեղացել, ինչո՞ւ ոչ մի անգամ իրեն հյուր չեք գնացել։ Ասաց, որ եթե դուք այս անգամ էլ նրան այցի չգնաք, ապա նրա որդին՝ Սառնամանիքը շատ կբարկանա...

Հաջորդ օրը Աշունը գնաց, եկավ Ձմեռը։ Նա ամբողջ աշխարհը ծածկեց սպիտակ ձյունով, մի հոյակապ սառցե դղյակ կառուցեց և իր Սառնամանիք որդու ու երեք աղջիկների՝ Փոթորիկի, Բքի և Հողմի հետ սկսեց ապրել սառցե դղյակում։

— Այ, կեցցե՛ս, Ձմեռ պապիկ,— ասաց Հայկը,— մի տես, թե ինչ փափուկ, սպիտակ ձյունով է ծածկել ամբողջ աշխարհը։

— Արի նրան հյուր գնանք,— ասաց Արամը,— չէ՞ որ նա հրավիրել է մեզ։

— Իսկապես, արի գնանք,— համաձայնեց Հայկը։





Եվ նրանք սկսեցին պատրաստվել։ Վերցրին մի-մի կացին, մի տուփ լուցկի, ոտքերին հագցրին դահուկ-սահնակներն ու ճանապարհ ընկան։

Սլանում էին սպիտակ, մաքուր դաշտով, մեկ էլ հանկարծ նրանց դեմ ելավ Թավամազ Նապաստակը։

— Ո՞ւր էդպես, եղբայրնե՛ր, — հարցրեց նա։

— Հյուր ենք գնում Ձմեռ պապիկին։

— Վա՜յ, նրա մոտ չգնաք, տղերք, հանկարծ մի բան չպատահի, շա՜տ չար ծերուկ է, — զգուշացրեց Նապաստակը, — համ էլ դուք տաք մուշտակներ չունեք...

— Նա չար չի, Շլդիկ, — պատասխանեց Հայկը, — տես, թե ինչ փափուկ, սպիտակ վերմակ է փռել գետնին, հենց քո բույնն էլ դրանից է տաքացել։

Ասենք, ճիշտ է, համաձայնեց Նապաստակը, — նա ինքը, գուցե և բարի է, բայց նրա զավակները, օ՜, շատ են չար։ Հենց որ նրա տղան՝ Սառնամանիքը դեպի ձեզ սողա ու սկսի ձեզ սառեցնել, հենց որ նրա չարաճճի աղջիկները բարկանան ու վրա պրծնեն, վայն եկել է ձեզ տարել...

— Մենք նրանցից չենք վախենում, — ասացին եղբայրներն ու առաջ սլացան։

Հեռվում երևաց սառցե դղյակը։ Արևի պայծառ ճառագայթները խաղում, փայլփլում էին դղյակի բյուրեղապակե պատերին։

— Ա՜, վերջապես ինձ մոտ եկաք, — ուրախացավ Ձմեռը, — համեցեք, համեցեք, թանկագին հյուրեր...

Այդ ժամանակ Սառնամանիքը, Փոթորիկը, Հողմն ու Բուքը տեղներից ելան ու միաբերան գոռացին։

— Էդպիսի հյուրեր չե՛նք ուզում։



Հայրիկ, ո՞նց ես մոռացել, թե ինչպես էին դրանք ուրախանում, երբ որ Գարունը քեզ ու մեզ հաղթեց ու բոլորիս քշեց հեռու սարերը…

— Ա՜խ, այդպե՜ս բարկացավ Ձմեռը,— ուրախանո՞ւմ էին, դե որ այդպես է, դրանց մի դաս տվեք։

Այստեղ Սառնամանիքը մոտ սողաց, Փոթորիկը հարձակվեց, Հողմը ոռնաց, Բուքը գալարվեց, բայց համարձակ եղբայրները չվախեցան, կացինները առած, անտառ վազեցին և սկսեցին մի մեծ սոսի կտրել։ Հենց որ սոսին տապալվեց, մանր-մանր կոտրատեցին, մի-մի գիրկ առան ու կրկին դղյակ գնացին։ Փայտերը շարեցին ու մեծ խարույկ վառեցին։ Խարույկը բոցկլտաց ու Ձմեռ պապի դղյակը պլպլաց հազար գույներով։

Եվ հենց որ խարույկը թեժացավ, չար Սառնամանիքն իր քույրերի հետ դղյակից դուրս թռավ ու փախավ հեռու սարերը, իսկ Հայկն ու Արամը մնացին Ձմեռ պապի մոտ։

— Քաջերին ու համարձակներին շատ եմ սիրում,— նրանց նայելով ասաց Ձմեռ պապիկը, իմ անհանգիստ զավակներին լավ վախեցրիք, հիմա նրանք էլ շուտ չեն վերադառնա հեռու սարերից։

Հայկն ու Արամը տեսան, որ Ձմեռն առանց իր Սառնամանիք որդու, Փոթորիկ, Բուք ու Հողմ աղջիկների՝ շատ բարի. ու սիրալիր է։

Իսկ Ձմեռ պապը նրանց փառավորապես հյուրասիրեց, նվերներ տվեց ու ճանապարհ դրեց դեպի տուն։

Ահա վազում են նրանք իրենց դահուկ-սահնակներով։ Մեկ էլ հանկարծ տեսնում են, փայտն ուսին՝ դեմից գալիս է Նապաստակը։ Նապաստակի հետ Արջն է գալիս հսկայական մահակով, Գայլը՝ դանակով և Աղվեսը՝ կացինն առած։

Եղբայրները կանգ առան, նրանք էլ կանգ առան։

— Էդ ո՞ւր եք գնում,— հարցրեց Արամը։

— Գալիս էինք, որ ձեզ փրկենք Ձմեռ պապից ու նրա չար զավակներից,— պատասխանեց Նապաստակը,— իսկ դուք, տեսնում եմ, ողջ ու առողջ եք։

— Էդ ո՞նց փախաք նրանցից,— զարմանում էին գազանները։

Հայկն ու Արամը պատմեցին, թե ինչպես են Սառնամանիքին, Փոթորիկին, Բքին ու Հողմին քշել հեռու սարերը։

— Նապաստա՛կ, շվին բեր, պիտի պարենք,— ասաց Արջը։

Նապաստակը շվին փչեց, ու կենդանիներն սկսեցին պարել, նրանց հետ էլ Հայկն ու Արամը։ Փխրուն, փափուկ ձյունը թռչում էր նրանց ոտքերի տակից, և նրանք չէին մրսում… Չէ՞ որ Սառնամանիքը իր քույրերի հետ սարերն էր փախել։

# ՏԻՄԲՈ-ԲՈՒՄՈ, ՏԻՄԲԱ-ԿՈՒՄ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Տոնածառի շուրջը ես
Շատ պար եկա, հոգնեցի։
Մայրիկն ասաց. «Քնե՛ս»,
Բայց ոնց եղավ՝ քնեցի։

Երազիս մեջ իբրև թե
Ընկել էի մի անտառ.
Շուրջս խավար ու մութ էր,
Չէր երևում ոչ մի ծառ։

Ոչ էլ մարդ էր երևում,
Ոչ՝ ճանապարհ, ոչ՝ կածան.
Բայց ովքե՞ր են վերևում,
Սիրտս ընկավ կասկածանք։

Հա խոսում են, քչփչում,
Ծիծաղում են կամացուկ,
Մեկ հազում են, մեկ ճչում,
Մեկ փսփսում են ծածուկ։

Ես ուզում եմ նայել վեր՝
Գլուխս չի բարձրանում.
Ինչ-որ մազոտ սև թևեր
Հանկարծ ինձ վեր են տանում։

Գրկած տանում են, տանում,
Թե ո՞ւր՝ ես չեմ հասկանում։

Մեկ էլ շուրջս լուսանում,
Դառնում է շոգ մի կեսօր,
Տեսնեմ, ինձ վեր է հանում
Մի մարդ բրդոտ երեսով։

Տարօրինակ մի պապիկ.
Ամբողջ դեմքը ծռմռված,
Չէ՛, դա մարդ չէր, այլ կապիկ,
Մի այլանդակ արարած,
Որ ինձ տարավ ու տարավ,
Դրեց բարակ մի ճյուղի.
Սիրտս խփում էր արագ
Ու կծկվում երկյուղից։

Մեկ էլ ես ի՞նչ եմ տեսնում.
Ծառի բոլոր ճյուղերին
Կապիկներ են օրորվում
Ու աչքով են անում ինձ։





կախված գնում են, գալիս,
Հռհռում են, ծիծաղում.
Ինձ լեզու են ցույց տալիս,
Մազերիս հետ են խաղում։

— Ի՞նչ եք ուզում, ովքե՞ր եք,—
Խոսում եմ ես վերջապես.
— Իսկ մենք քո նոր գրքերն ենք,
Չե՞ս ճանաչում միթե մեզ։

Լավ մտածիր, կհիշես
Ի՞նչ ես նայում զարմացած.

Իսկ մի բրդոտ աներես
Առաջ եկավ ու ասաց.

— «Չե՞ս ճանաչում, նայիր տես,
Տիմբո-Բումը, Տիմբա-Կում։
Հին ծանոթներ ենք կարծես.
Տիմբա-Կումը, Տիմբո-Բում։

Հիշիր, որտե՞ղ կապիկ կա,
Տիմբո-Բումը, Տիմբա-Կում.
Ա՜խ, դու փնթի, ապիկար,
Տիմբա-Կումը, Տիմբո-Բում։

Հանկարծ նայեմ, ի՞նչ տեսնեմ,
Ճիշտ որ ծանոթ է կարծես,
Թվում է, թե տեսել եմ
Ինչ-որ մի տեղ նրան ես։

Էլ ի՞նչ «ինչ-որ», ի՞նչ «մի տեղ»,
Իմ գրքի մեջ եմ տեսել.
Խեղկատակին այդ տգեղ
Հենց ես ինքս եմ նկարել։

Գրքիս բոլոր էջերին
Նկարել եմ ես դրան.
Հիմա էլ, տես, եկել է
Ծիծաղում է ինձ վրա։

Ու ես ելա, որ դաս տամ
Այդ Տիմբոյին գազազած.
Հանկարծ ճյուղը կոտրվեց,
«Թրը՜մփ»... ծառից ընկա ցած։

Հենց այստեղ էլ զարթնեցի
Ու երազն էլ չքացավ.
Բայց գրքերս հիշեցի
Եվ ամեն ինչ հասկացա։

Որոշեցի էլ երբեք
Նկար չանեմ գրքիս մեջ,
Մաքուր պահեմ տետրերս,
Չկեղտոտեմ ոչ մի էջ։

Թե ուզեմ էլ նկարել
Կապիկներին՝ Տիմբա-Կում,
Կնկարեմ նրանց իմ
Նկարչական տետրակում։



Նկ. Ա. ՊԱՐՈՆՅԱՆԻ

# ԸՄԲԻՇՆԵՐԸ

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ





# Թվաբանության դասը

Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Վարուժանը սիրում է թվաբանության դասը։

Ահա սև ու դեղին հատիկներով մեծ համրիչը։

— Չը՛խկ-չը՛խկ-չը՛խկ, — շարժվում են հատիկները։

Մե՛կ, երկու՛, երե՛ք. երեք սև հատիկ։

Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք, չո՛րս. չորս դեղին հատիկ։

Երեքին ավելացրած չորս, հավասար է յոթի։

Վարուժանը հաշվում է, իսկ ուսուցչուհին գոհ է պատասխանից։



— Ճի՛շտ է,— ժպտում է։

Վարուժանը սիրում է Թվաբանության դասը, սիրում է ընկեր Համբիկին և սև ու դեղին հատիկներով համբիչը։

Բայց ահա մի անգամ ընկեր Համբիկը Թվաբանության դասն սկսեց առանց համբիչի։

— Երեխանե՛ր, հաշվեցեք մտքով։ Հինգին ավելացրած չորս։

Մտածում են բոլորը, մտածում է և Վարուժանը։

Եվ շա՜տ, շա՜տ է ուզում, որ ինքն ամենից շուտ գտնի պատասխանը։ Բայց հաշվում է, հաշվում և դուրս չի գալիս։



Ափսո՜ս, այ, եթե լիներ սև ու դեղին հատիկներով համբիչը... Բայց հանկարծ Վարուժանը նայում է ընկեր Համբիկին, նայում է նրա կապույտ շրջազգեստին և բարձրացնում է ձեռքը։

— Հինգին ավելացրած չորս, հավասար է իննի։





Գոհ է ընկեր Համբիկը, ժպտում է Վարուժանը։

Վարուժանը սիրում է թվաբանության դասը, ընկեր Համբիկին և նրա կապույտ շրջազգեստը։

Միայն մի անգամ տխրեց Վարուժանը, երբ նա կանգնած էր գրատախտակի մոտ։ Բարակ մատներով սրբում էր ձեռքի կավիճը, ուզում էր մտքի մեջ հաշվել, բայց չէր կարողանում։

Տխրեց Վարուժանը, դողացին նրա բարակ շրթունքները, ու արցունքի կաթիլներ թափվեցին աչքերից։

Ափսոս, որ ընկեր Համբիկը այդ օրը չէր հագել իր կապույտ շրջազգեստը։ Չէ՞ որ նրա վրա տասը փայլուն կոճակներ կային, ճիշտ և ճիշտ համրիչի հատիկների նման։

Վարուժանը սիրում է թվաբանության դասը, ընկեր Համբիկին և հիմա կարողանում է հաշվել առանց համրիչի ու կոճակների։





# Պարտեզ

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Նկարել եմ մի լավ պարտեզ,
Պարտեզի մեջ՝ ծառեր պես-պես,
Ծառերի մոտ՝ մի ցանկապատ,
Ցանկապատից շուն է կապած,—
Որ երբ հանկարծ անկարգ Սոսը
Ուզի մտնել իմ պարտեզը,—
Շունը հաչի,
Սոսը փախչի...

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

## ԳՆԱՑՔԸ

— Տո՛ւ-տո՛ւ,—բացեք իմ ճամփան,
Ես գնացք եմ իսկական.
Ունեմ շատ-շատ անիվներ,
Շոգեքարշ ու վագոններ։
Ռելսեր ունեմ ոտքիս տակ,
Գլխիս՝ երկար խողովակ,
Առատ-առատ ծուխ կանեմ,
Ուժեղ սուլոց կհանեմ,
Կնստեցնեմ ձեզ գոգիս,
Ուր որ ուզեք՝ կտանեմ...



Ն. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ



# ԾԱԿՈՏՈՂ ՊԱՀԱԿՆԵՐԸ

Ֆ. ԽԱԼՏՈՒՐԻՆ

Տատիկը երկու խնձորենի տնկեց բանջարանոցում, նրանք բարակ էին, նուրբ ճյուղիկներով, իսկ հասակով մի քիչ Վոլոդյայից բարձր։ Ամեն առավոտ երեխաները վազում էին ստուգելու, արդյոք խնձորենիները իսկի չե՞ն մեծացել։ Բայց խնձորենիները ինչ-որ անհայտ պատճառով չէին աճում։ Տատիկն ասաց, որ նրանք կսկսեն աճել գարնանը, երբ եղանակը տաքանա։ Բայց մինչև գարուն դեռ շատ կար։ Իսկ Վոլոդյան և Ալյոնկան ուզում էին, որ խնձորենիները հիմա սկսեն աճել։

— Մաման ասում է, որ ես ամեն օր մեծանում եմ,— զանգատվում էր Վոլոդյան։— Իսկ խնձորենիները ինչու՞ են միայն գարնանը աճում։

Մի գիշեր ձյուն եկավ։ Ամբողջ աշխարհը սպիտակեց։

Երբ Վոլոդյան գնաց բանջարանոց, այնտեղ ինչ-որ գազանի հետքեր տեսավ։ Հետքերը շատ էին։ Ըստ երևույթին, գազանը շատ էր ման եկել խնձորենիների և բալենիների միջև և ինչ-որ բան որոնել։

Վոլոդյան խրճիթ վերադարձավ։

— Տատիկ, ո՞րտեղ է իմ հրացանը։

— Սրահում կախված է։ Ինչի՞դ է պետք,— հարցրեց տատիկը։

— Որսի եմ գնում։

Վոլոդյան վերցրեց հրացանը, թղթե փամփուշտների տուփը և գնաց դեպի բանջարանոց։ Նա քայլում էր զգույշ, ցանկապատի հետևը թաքնվելով։ Գուցե գազանը նորից վերադարձել է, հանկարծ նրան չվախեցնի։

Բայց տատիկը ամբողջ գործը փչացրեց։ Նա Վոլոդյայի հետևից դուրս էր եկել. հենց որ հետքերը տեսավ, բարձրաձայն բղավեց.

— Ա՜խ, դու չարաճճի։ Տեսնում ես, եկել է արդեն։ Հանկարծ մեր խնձորե-

նիները չկրծի. այ դու չարագործ շլդիկ։

— Տատիկ, իսկ այդ ո՞վ է,— հարցրեց Վոլոդյան։

— Նապաստակը,— պատասխանեց տատիկը։

Վոլոդյան կասկածամտորեն ժպտաց.

— Միթե նապաստակը խնձոր է ուտում։

— Նա կրծոտում է ծառի կեղևը,— ասաց տատիկը։ Կմաքրի կեղևը չորս կողմից, ու խնձորենին էլ կչորանա։

Վոլոդյան վճռականորեն հայտարարեց.

— Տատիկ, ես կհսկեմ խնձորենիները և կսպանեմ նապաստակին։

Տատիկն ասաց.

— Քո հրացանով միայն ճանճերին կարելի է վախեցնել, ոչ թե նապաստակ սպանել։ Դե նապաստակն էլ խորամանկ է։ Նա չէ՞ որ գիշերն է մտնում բանջարանոց։

— Իսկ ես գիշերը կհսկեմ։

Բայց տատիկը միայն ձեռքը թափահարեց։

— Գնանք նախաճաշելու։ Քեզանից պահակ չի դուրս գա։ Մենք ուրիշ պահակներ կդնենք։

— Իսկ ի՞նչ պահակներ,— հարցրեց Վոլոդյան։

— Հետո կիմանաս,— ասաց տատիկը։

Նախաճաշելուց հետո, երեխաները տատիկի հետ գնացին անտառ։ Անտառում խոր լռություն էր տիրում։ Ծառերի վրա արդեն վաղուց տերևներ չկային։ Միայն եղևնիները և սոճիներն էին կանաչ, ինչպես ամռանը։ Իսկ ձորալանջին սևին էին տալիս գիհի փշափնջերը։ Հենց սրանք էլ պետք էին տատիկին։ Նա սուր դանակով մի քանի խոշոր փշափունջ կտրեց։

Ետ վերադարձան։ Ալյոնկան մեկ փշափունջ էր տանում, Վոլոդյան՝ երկու, իսկ տատիկը՝ հինգ։

Տատիկը տանից մի բարակ պարան վերցրեց, չորս հատ փշափունջ պարանով կապեց խնձորենուն։ Վոլոդյան և Ալյոնկան ժրաջան կերպով օգնում էին տատիկին։ Վոլոդյան բռնել էր փշափնջերը, որպեսզի նրանք վայր չընկնեին, իսկ Ալյոնկան տատիկի հետևից տանում էր պարանի կծիկը։



Բոլոր կողմերից խնձորենուն սեղմ շըրջապատել էին ծակող պահակները։ Օր ու գիշեր նրանք կկանգնեն իրենց պահակակետում։ Ապա փորձիր խցկվել, շլդիկ։ Իսկույն սուր ասեղները քիթդ կծակեն։

Բայց նապաստակն այլևս չեկավ։ Երևի երաշտահավերը պատմել էին նրան, որ խնձորենիների մոտ այժմ վտանգելի պահապաններ կան։ Չէ՞ որ նրանք տեսան, ինչպես երեխաները տատիկի հետ միասին խնձորենին փաթաթում էին գիհիի փշափնջերով։

Թարգմանեց՝ Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ



# Խորամանկ աղվեսը

Ա. ԴԱՐԲՆԻ

Մի օր աղվեսը
Եկավ հավաբուն։
Ասաց.—Աղվես չեմ,
Այլ՝ անմեղ կատու...
Անխելք հավերը
Շատ ուրախացան
Ու թառի վրա
Խոր քնով անցան...
Այդ էր հարկավոր
Սոված աղվեսին...
Հավերին խեղդեց
Գիշերվա կեսին։

# ՓՈՒՇԸ

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Թնգթնգում էր Սաթիկը,
Փուշ էր մտել մատիկը,
Ախ, ի՞նչ անի, ի՞նչ անի,
Մատի փուշը ո՞նց հանի։
Վազեց գնաց տատի մոտ,
Տատը ընկավ ձեռ ու ոտ,
Քթին դրեց ակնոցը,
Ծտկեց նախշուն գոգնոցը,
Նայեց ցավող մատիկին,
Սրտապնդեց Սաթիկին,
Պաչեց աչիկն ու թուշը,
Զգույշ հանեց էն փուշը։
Փուշն էլ ի՞նչ փուշ, ճստըլիկ,
Լվի ոտից պստըլիկ։



Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

Տրվում է անվճար «Պիոների» 12-րդ համարի հետ



Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

№ 12 1958 թ.
ԴԵԿՏԵՄԲԵՐ

# ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
30-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# Իսկական Ձմեռ Պապիկը



**Պատմվածքն արժանացել է «Պիոներ» ամսագրի մրցանակաբաշխության ժյուրիի խրախուսանքին**

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Կ. ԴԱԼԼԱՔՅԱՆ

*Հասմիկը բարձրացել էր աթոռին, քիթը կպցրել ապակուն ու տատիկի նման ձեռքը ճակատին դրած, դուրս էր նայում։ Մութը վաղուց էր ընկել։ Դրսում երևում էին միայն թթենու կատարը և պատշգամբից բակ տանող աստիճանները, մեկ էլ մորաքույր Անահիտենց տան տանիքը։*

*Հասմիկը նայեց, նայեց ու բարկացած ձայնով ասաց.*

*— Է, չի գալիս, տատիկ, ի՞նչ անեմ,— և նա ոտքն այնպես ամուր խփեց աթոռին, որ խեղճ մոռան փիսոն սրտանեղ դուրս թռավ աթոռի տակից։*

*Հասմիկի եղբայր Գառնիկը շատ բան գիտեր։ Նա նույնիսկ կարողանում էր ճիշտ կերպով ասել, թե ժամը քանիսն է, բայց մի քիչ պարծենկոտ էր։ Էվ, հենց որ նա լսեց Հասմիկի բարկացած ձայնը, ծիծաղեց ու ասաց.*

*— Ա՛յ գժո, չե՞ս տեսնում, որ դեռ հինգ րոպե կա։*

*Հասմիկը կարծես բոլորովին էլ չլսեց։ Այնպես էր կպել լուսամուտին, որ չտեսավ էլ, թե ինչպես հայրիկը մոտեցավ էլեկտրական լույսի կոճակին, իսկ մայրիկն ու տատիկը ժպտացին և մուս ու փուս նստեցին բացված սեղանի մոտ։ Հանկարծ ռադիոընդունիչի միջից ինչ-որ զանգեր լսվեցին և հենց այդ ժամանակ սենյակի լույսը մարեց։*

*— Վա՜յ, բա ինչպե՞ս պիտի տեսնեմ,— լացակումած ասաց Հասմիկը, աթոռից իջնելով։ Բայց հայրիկը նորից վառեց լույսը։ Հասմիկը հասկացավ, որ նա է լույսը մարել, ուզեց լալ, բայց մեծերը ծիծաղեցին, իսկ հայրիկը գրկեց նրան ու Գառնիկին և համբուրեց։*

*— Շնորհավոր ձեր նոր տարին, բալիկներ ջան,— ասաց հայրիկը։*

*Մայրիկն ու տատիկն էլ շնորհավորեցին ու համբուրեցին նրանց, բայց Հասմիկն անընդհատ լուսամուտին էր նայում։*

*— Նոր տարին արդեն եկավ, Հասմիկ ջան, էլ մի նայիր.— ասաց տատիկը, շոյելով Հասմիկի գլուխը։*

*Հասմիկը զարմացած նայեց ու ասաց.*

*— Բա Ձմեռ պապիկը չի՞ գալու...*



Բոլորը ծիծաղեցին, իսկ Գառնիկը Համիկի տնազն անելով, ասաց.
— Բա Ձմեռ պապին չի՞ գալու: Գժո, Ձմեռ պապիկը հո իսկականից չի...
Հենց այդ ժամանակ դռան զանգը հնչեց:
— Եկա՜վ, եկա՜վ,— ուրախ գոչեց Համիկը և դուրս թռավ միջանցք: Գառնիկը շփոթված կանգնել էր. «Ո՞վ գիտի, մեկ էլ տեսար, Ձմեռ պապին իսկականից եկավ»— մտածեց նա:
Հայրիկը բացեց դուռը, զարմացած նայեց դըրսում կանգնած մարդուն, հետո ծիծաղելով ասաց.
— Համեցեք, համեցեք, Ձմեռ պապիկ ջան, Համիկն այնքան սպասեց քեզ, այնքան սպասեց...
Զարմանքից Համիկի ու Գառնիկի աչքերը չռվել էին:
Դռան մեջ կանգնած էր Ձմեռ պապիկը՝ ոտքից մինչև գլուխ սպիտակ հագած, շալակին մի պարկ, իսկ ձեռքին էլ մի փայտի կտոր:
— Շնորհավոր ձեր Նոր տարին,— հաստ ձայնով ասաց Ձմեռ պապիկն ու փայտին հենվելով ներս մտավ: Համիկը ճչաց ուրախությունից, առաջ վազեց ու փարվեց Ձմեռ պապիկին: Իսկ Գառնիկը մոռանալով զարմանքը,— բարձր-բարձր ասաց,
— Ես որ ասում էի...
Երբ Ձմեռ պապիկը բռնեց Գառնիկի ու Համիկի ձեռքից և նրանք տատիկի, մայրիկի, հայրիկի հետ միասին սկսեցին պարել տոնածառի շուրջը, Համիկը կարծես նոր միայն տեսավ, թե ինչ գեղեցիկ է տոնածառը: Հուլունքների նման նրա ճյուղերին փայլփլում էին փոքրիկ, գույնզգույն լամպիկները:
— Դե՛, երեխաներ,— ասաց Ձմեռ պապիկը,— տեսնենք ի՞նչ պիտի արտասանեք: Ով լավ արտասանի, նվեր կստանա:
Համիկն արագ, որպեսզի Գառնիկն իրենից առաջ չընկնի, բառերը կուլ տալով արտասանեց.

Լենին պապին էլ մանուկ է եղել,
Մեզ նման պստիկ, ժիր ու սիրունիկ...

Համիկի արտասանելու ժամանակ Գառնիկը մտքում որոշում էր, թե ինքն ինչ է արտասանելու: Բայց, երբ հանկարծ Ձմեռ պապիկն ուրախ ծափահարելով գոչեց.
— Շատ ապրես, Համիկ ջան, հիմա էլ դու, Գառնիկ,
Գառնիկը շփոթվեց, մոռացավ, թե ինչ էր արտասանելու ու կարմրելով ասաց.
— Ես... ես մեծ եմ... ես կերգեմ:
— Շատ լավ, դե երգիր...
Գառնիկն առաջ եկավ, պատվի առավ ու երգեց.

«Պիոներ, րոպեներ մի կորցնիր դու,
Ջերմ սիրով միշտ նայիր քո առաջ,
Ամեն օր դու ողջույն տուր
Նոր ծագող արևին,
Ամեն օր...»:

Գառնիկը մի քանի անգամ կրկնեց այս վերջին «ամեն օր» բառերը, շփոթվեց, աչքերը լցվեցին արցունքով և նա փախավ միջանցք: Իսկ մեծերը ծափահարում, ծիծաղում էին, երևի գոհ էին: Ձըմեռ պապիկը պարկից հանեց նվերները, մի տոպրակ մեկնեց Համիկին, մյուսն էլ ձեռքին բռնած, կանչեց Գառնիկին: Հանկարծ Գառնիկը ներս մըտավ, մոտեցավ Ձմեռ պապիկին ու ուղիղ նայելով նրա աչքերի մեջ, ասաց.
— Դու իսկի էլ իսկական Ձմեռ պապիկ չես:
Համիկը զարմացած թողեց տոպրակը, վախով նայեց Ձմեռ պապիկին:
— Իսկ ո՞վ եմ ես,— հարցրեց Ձմեռ պապիկը:
— Դու մորաքույր Անահիտն ես:
— Չէ, Գառնիկ, Ձմեռ պապիկն է, մեզ նվեր է բերել, տե՛ս,— մեջ ընկավ Համիկը,— բայց նրա սիրտը կասկած ընկավ. չլինի՞ թե Ձմեռ պապիկը չի, այլ մորաքույր Անահիտը:
— Ես ասում եմ, որ Ձմեռ պապիկը չի: Ա՛յ, արի միջանցք, տես, Ձմեռ պապիկը որտեղի՞ց կըգտներ իմ փայտիկը: Ես երեկ մորաքույր Անահիտենց բակում դրանով խաղում էի: Համ էլ նրա կրկնակոշիկները մորաքույր Անահիտինն են:
Մեծերը ուրախ ծիծաղեցին: Մորաքույր Անահիտը գրկեց Գառնիկին, համբուրեց և ասաց.



— Ապրես, Գառնիկ, դե որ դու իմացար, թե ով եմ ես, ահա քեզ մի նվեր էլ։—Մորաքույր Անահիտը Գառնիկին տվեց մի գեղեցիկ կազմով գիրք։

Իսկ Հասմիկը, որ զարմանքից դեռ ուշքի չէր եկել, լացակումած ասաց.

— Ես իսկական Ձմեռ պապի՛կ եմ ուզում,—և ոտքը խփեց հատակին։

— Ի՛հ, գժո, բա որ ես ասում էի, թե իսկական Ձմեռ պապիկ չի լինում,—դու ինձ չէիր հավատում, տեսա՞ր,— պարծեցավ Գառնիկը։

Ոչի՜նչ, Հասմիկ ջան,—ասաց մորաքույր Անահիտը,—սպիտակ բեղերն ու մորուքը հանելով,— վաղը ես կտանեմ հրապարակ, այնտեղ մեծ Ձմեռ պապիկ կա։ Իսկ հիմա քնեցեք, ժամանակն է։

* * *

Մորաքույր Անահիտն ու Հասմիկը առավոտյան գնացին հրապարակ։ Ինչքա՜ն շատ երեխաներ կային այնտեղ։ Հասմիկը մեկ երեխաներին էր նայում, մեկ՝ հսկա տոնածառին ու նրա վրայի խաղալիքներին, մեկ էլ՝ տոնածառի տակին, հարթակի վրա կանգնած հարմոն նվագող Արջուկ քեռուն, մանդոլինան բռնած Մորուք-Այծիկին, Ճտիկ-Խոզուկին, Հզոր-Առյուծին, Խորամանկ-Աղվեսին ու նրանց միջև կանգնած Ձմեռ պապիկին։ Հասմիկը ամենից շատ նայում էր Ձմեռ պապիկին, որը ծյունե գլուխը բարձր պահած, մի ձեռքը դրել էր սպիտակ մուշտակի գրպանում, իսկ մյուսով՝ բռնել երկար ձեռնափայտը։

«Այս Ձմեռ պապիկն իսկական է, ա՛յ, ոտքերին կրկնակոշիկներ չկան, իսկ ձեռքին էլ ոչ թե փայտիկ է, այլ մի մեծ մահակ»,—մտածեց Հասմիկը։

Հրապարակում նվագում էին, պարում, երգում։

Հասմիկը կանգնել էր Ձմեռ պապիկի դիմաց, ամուր բռնել էր մորաքույր Անահիտի ձեռքն ու չէր ուզում տեղից շարժվել։

— Գնանք, Հասմիկ ջան, ցուրտ է,—ասաց մորաքույրը։

— Ես ուզում եմ պարել, մորաքույր,—ասաց Հասմիկը։

Մորաքույրը ժպտալով ասաց.

— Դե պարիր։

— Չէ՛, ես էնտեղ եմ ուզում պարել,—Հասմիկը ձեռքով ցույց տվեց Ձմեռ պապիկին։

Մորաքույրը գրկեց նրան, ծիծաղելով բարձրացրեց հարթակի վրա։ Հասմիկը կանգնեց, նայեց Ձմեռ պապիկին, ապա մոտեցավ, մատներով շոշափեց։ Ձմեռ պապիկն անշարժ էր, միայն նրա ծյունե հոնքերի տակից մեծ, սպիտակ աչքերն էին ժպտում։ Հասմիկը շրջվեց, նայեց մորաքույր Անահիտին և հետո էլ հրապարակում քայլող ու տոնածառի մոտ կանգնած երեխաների խմբին։ Հասմիկն ուրախ էր։ Նրան թվում էր, թե հիմա բոլորը իրեն են նայում։ Ո՞վ ասես, որ չի շփոթվի այդքան մարդկանց առաջ։ Իսկ նա միայն մի քիչ շփոթվեց և իսկույն ասաց.

— Դե, նվագիր...

Մորաքույր Անահիտը բերանով «Էնզելի» նվագեց: Մոտ կանգնած երեխաները սկսեցին ուրախ ծափ տալ, իսկ քիչ հեռվում նստած նվագախումբը տեսնելով, որ Հասմիկը պարում է, սկսեց բարձր նվագել: Հասմիկը երկար պարեց: Ամեն կողմից լսվում էին ուրախ բացականչություններ: Մեկը «ապրես» էր գոչում, մյուսը՝ «կեցցես»:

Պարը վերջացավ: Մորաքույրը մոտեցավ, որպեսզի գրկի Հասմիկին, իսկ նա ետ-ետ գնաց, նայեց ձմեռ պապիկին, որն անշարժ կանգնած էր:

— Հիմա էլ արտասանեմ,—ասաց Հասմիկն ու սկսեց արտասանել «Լենին պապին». Հասմիկի արտասանելու ժամանակ արդեն այնքան երեխաներ էին հավաքվել, որ ասեղ գցելու տեղ չկար և երբ բոլորը միասին ծափահարեցին, Հասմիկին թվաց թե մեծ թմբուկներ են նվագում.ու նա չէր հոգնում: Վերջապես Հասմիկը տեսավ, որ ձմեռ պապիկի սպիտակ աչքերն են միայն ժպտում, իսկ ինքը հանգիստ կանգնել է ու չի շարժվում, հոնքերը կիտեց, ցած իջավ: Ամեն կողմից ուրախ գոչում էին, մեծերը շոյում էին նրա գանգուր մազերը:

— Դե, շատ ապրես, Հասմիկ ջան, հիմա գնանք,—ասաց մորաքույրը: Հասմիկը գլուխը շարժեց, ցած ձայնով ասաց.

— Չէ,—ու մնաց կանգնած:

— Իսկ հիմա ի՞նչ ես ուզում,—ժպտալով հարցրեց մորաքույրը:

Հասմիկը տխուր նայեց մորաքույր Անահիտի աչքերին և ասաց.

— Բա նվեր չի՞ տալու...

Մորաքույր Անահիտն ուրախ ծիծաղեց, գրկեց Հասմիկին, համբուրեց և հավաքված երեխաների միջից դուրս գալով ասաց.

— Գժո ջան, չէ՞ որ նա իսկական չի, բամբակից է պատրաստված:

Հասմիկը գրկել էր մորաքույր Անահիտի վիզն ու դժգոհ մտածում էր. «Իսկ իսկական ձմեռ պապի լինո՞ւմ է, թե ոչ»:



**Պատմվածքն արժանացել է «Պիոներ» ամսագրի մրցանակաբաշխության ժյուրիի խրախուսանքին**

ԺԻՐԱՅՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ

ՆԿ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

## 1

Խտացող ամպերը թույլ չտվին, որ դալուկ, ասես մրսած ու կծկված արևը մի վերջին անգամ էլ նայի լեռնաշխարհի փոքրիկ գյուղին:

Մթնեց միանգամից:

Դեմքը հպած պատուհանի սառն ապակուն, Վիրապը մի անգամ էլ նայեց ճանապարհի ուղղությամբ, բայց ոչինչ տեսնել չկարողացավ: Ահ ընկավ սիրտը: Տեսնես ի՞նչ եղան ընկերները ...

Սենյակի դուռն աղմուկով բացվեց: Մայրն էր, փայտ էր բերում ներքնահարկից: Վիրապը նորից դեմքը հպեց ապակուն: Դարձյալ ոչինչ չերևաց:

— Այ տղա, էդ ի՞նչ ես կպել լուսամուտին ու մնացել ...

Տղան շրջվեց, բայց չպատասխանեց: Նայելով որդու վախվորած դեմքին, մայրն արագ մոտեցավ, գրկեց նրան, իջեցրեց պատուհանից:

— Մայրիկ, — վերջապես հեկեկանքի միջից ասաց Վիրապը, — ախր Հայկն ու Սուրիկը մնացին ճամփին ու հլա չկան... Հայկի ոտը դուրս էր ընկել...

— Ի՞նչ ես ասում, — ցնցվեց մայրը, — բա ինչո՞ւ



շո՞ւտ չասիր: — Ու չսպասելով պատասխանի, վեր կացավ, շտապով հագավ վերարկուն, շալը գցեց.— Դու կաց, ես մի տեսնեմ...

Վիրապն շտապում էր, բայց չէր կարողանում շուտ հագնվել: Չէր գտնում վերարկուի թևքերը:

— Շուտ արա, — անհամբեր գոռաց մայրը:

Դուրս եկան: Սառը քամին ձյան փաթիլները խըփեց նրանց դեմքերին: Մութ էր, մուժ: Ոչինչ չէին տեսնում: Բայց մայրը գնում էր հաստատ քայլերով... Բռնած մոր մեծ, տաքուկ ձեռքը, Վիրապը կես քայլ հետ ընկած անձայն հետևում էր նրան: Քայլում էր ու մտածում: Մտածում էր ընկերների մասին ու հիշում միասին անցկացրած օրերը...

## 2

Շատ էին այդ օրերը, լավն էին:

Միասին էին մեծացել, վազվզել արձակ դաշտերում: Վաղ գարնանը համեղ կոճղեզներ էին հանել հողի տակ, բուրավետ ակոսից: Իսկ ամառնե՞րը...

— Կալի ոսկեփոշի մղեղը իջնում էր իրենց վրա, դարձնում շեկ... Քշում էին կամերը, քշում մինչև ուշ իրիկուն: Մինչև առավոտ էլ կմնային, եթե մեծերը չուղարկեին քնելու ...

Հիշելու շատ բան կա:

Հետո դպրոց գնացին: Փոքր էր գյուղը, փոքր էր դպրոցը: Բայց որքան լավ օրեր էին անցկացրել այդ փոքրիկ դպրոցում՝ միշտ երեքով միասին: Սովորել, անցել էին դասարանից դասարան ու մի օր էլ ավարտել էին վերջին չորրորդ դասարանը:

Ամբողջ ամռանը վազվզել էին ազատ ու անհոգ, իսկ աշնանը գնացել հարևան գյուղի դպրոցը: Շատ էին ուսուցիչները, իսկ աշակերտներին թիվ չկար... Ու սիրում էին նրանք իրենց՝ լավ ընկերության համար ...

Վեր էին կենում առավոտ ծեգին, ձայն տալիս իրար ու բռնում դպրոցի ճանապարհը: Անցնում էին երկու դաշտ, հետո ժայռոտ բլուրը, իջնում ձորը, իսկ նրանից դենը երկու բլուր ու մի դաշտ էր մնում մինչև դպրոց...

Լավ էր, լավ էր ամեն ինչ:

## 3

Այո՛, ամեն ինչ լավ էր մինչև այսօր:

Երբ հնչեց վերջին դասի զանգը, ամեն օրվա պես միասին դուրս եկան ու բռնեցին գյուղի ճանապարհը: Դեռ կեսօր էլ չկար: Առաջին բլրակի մոտ լայն թաթերի հետքեր տեսան:

— Շուն կլինի, գելխեղդ, — ասաց Սերիկը:

— Չէ, գայլ է, — ուղղեց Հայկը, — ես գայլի հետքերը ճանաչում եմ:

Սերիկը չառարկեց: Ինքն էլ ձայն չհանեց, թեև





շատ կուզենար հակառակը ապացուցել, որ դրանք շան հետքեր են: Չխոսեց, բայց վախեցավ:

— Հետո՞... Հա՛, հետո Սերիկը պպզեց ու բլրակի լանջով ցած սահեց, ինքը հետևեց նրան: Իր ետևից սահում էր Հայկը: Հանկարծ նա սուր ճչաց: Ինքը մի կերպ պահեց իրեն ու ետ նայեց: Հայկը ոչ թե սահում էր, այլ գլորվում: Այդպես գլորվեց մինչև բլրակի ստորոտը, Սերիկի մոտ:

— Ո՜տս, վա՜յ, ո՜տս,— տնքում էր Հայկը:

Ճարվարի տակ բարձրացրին, նայեցին:

— Կամ դուրս է ընկել, կամ կոտրվել է,— եզրակացրեց Սերիկը:

Հայկը խոր տնքում էր: Ցավից սպիտակել էր նրա դեմքը:

— Հիմա ի՞նչ անենք, մնա՞նք... Իսկ գայլերը՞...— անցավ Վիրապի մտքով:

Ի՞ր ձայնն էր այդ: Այո՛: Բայց ուրիշ տեսակ հնչեց: Սերիկը սուր նայեց Վիրապին: Այնքան տարիների ընթացքում առաջին անգամ էր Սերիկը այդպես նայում իրեն: Իմացա՞վ Սերիկը, որ՞ ինքը վախենում է: Այո՛, իմացավ:

— Թե որ ուզում ես, դու գնա,— ասաց նա:

Հիշում է, ինքը շատ ուրախացավ: Չնկատել տվեց նրա ասելու տոնը:

— Հա՛, գնամ կասեմ, կգան օգնելու:

Ասաց ու վեր կացավ:

— Գնա՛:— Ինչու՞ էր Սերիկի ձայնն այնքան չոր, համառ:— Գնա՛... բայց ոչ ոքի մի ասի... պետք չի, կհասնենք...

Ինքը վեր կացավ ու քայլեց՝ առանց ետ նայելու...

## 4

Ի՞նչ եղան տղաները:

Երբ Վիրապի ամբողջ կերպարանքը ծածկվեց ձյունակույտի ետևում, Սերիկն ու Հայկն իրար նայեցին:

— Գուցե դու էլ գնաս,— կամացուկ ասաց Հայկը:— Ես մի կերպ կհասնեմ... սողալով:

Սերիկը ցնցեց ուսերը:

— Չէ՛, կգնանք միասին... Ես կտանեմ քեզ... չեմ թողնի...

Նա չոքեց ընկերոջ դիմաց.

— Բարձրացիր շալակս...

Բայց Հայկը կտրուկ հրաժարվեց:

Հենվելով առողջ ոտքին, նա ճիգ արեց, որ վեր կենա, բայց ճչաց ու նորից ընկավ:

Սերիկը հանդիմանանքով լի հայացքը ուղղեց նրան:

— Էս որ ասում էի:— Հետո մեղմ շարունակեց: Ոչի՛նչ, քիչ հանգստացիր ու թող որ շալակեմ...

Հանգստացան մի պահ:

— Դե, վեր կացանք,— հաստատուն ձայնով ասաց Սերիկն ու շալակեց ընկերոջը:

Վտիտ, փոքրամարմին Սերիկի համար դժվար էր շալակած տանել ընկերոջը, որն հիմա ավելի ծանր էր թվում, քան առաջ, երբ առողջ էր և խաղում էին միասին:

Բլրալանջը բարձրանալիս, նա երբեմն սահում էր, բայց կարողանում էր կամքի ուժով պահել իրեն: Նա մկանների և նյարդերի գերլարում էր զգում: Եղավ մի պահ, որ նրան թվաց, թե մկաններն ու նյարդերը խիստ ձգված թելի նման կկտրվեն, թվաց, թե այլևս ուժ չի գտնի: Բայց ճիգեր գործադրեց և նորից ուժ եղավ:

Ահա և բլրի գագաթը:

Սերիկը խորը շունչ քաշեց: Նայելով նրա քրտնած վզին, Հայկը քնքուշ, բայց առարկություն չհանդուրժող տոնով պահանջեց, որ հանգստանա:

Սերիկն զգուշությամբ իջեցրեց ընկերոջը, սրբեց քրտինքը: Նայեց արագորեն ցած գլորվող արևի դեղին սկավառակին, հասկացավ, որ մինչև մայրամուտ տուն չեն հասնի:

Հարկավոր էր շտապել: Անտեսելով հոգնածությունը, նա մոտեցավ բարձրացնելու ընկերոջը: Բայց Հայկը բացասաբար շարժեց գլուխը:

— Սահելով իջնենք:

Նրանք նստեցին իրար կողքի: Սերիկն զգուշությամբ պահում էր ընկերոջ ոտքը: Սահեցին: Որքան էլ Հայկն ընկերոջից ուզում էր թաքցնել, բայց Սերիկը նկատում էր, որ ցնցումների ժամանակ նա անասելի ծանր ցավեր է զգում:

Ավելի դժվար էր ձորալանջով սահելը, բայց ուրիշ ելք չկար: Սերիկի բոլոր փորձերը՝ դանդաղեցնելու սահելու ընթացքը, օգուտ չէին բերում: Մի քանի անգամ սուր ցնցումների ժամանակ Հայկը ճչաց: Նայելով ընկերոջ լարված դեմքին, Սերիկն զգաց, որ նա ճիգեր է գործ դնում, որպեսզի արցունքները զսպի: Սակայն արցունքներ չերևացին:

Սերիկը գիտեր, որ ընկերը չի ուզում ցույց տալ իր արցունքները: Նա թեքեց հայացքը և այլևս ըն-

կերոջը չնայեց, մինչև հասավ սառցաշերտով ծածկված գետակին հասնելը։ Այդտեղ հանգստացան մի պահ։ Հետո Սերիկը շալակեց ընկերոջը, բայց մի քանի քայլ հազիվ էր արել, երբ սայթաքեց։

— Թող ինձ, դու գնա մերոնց ասա,— առաջարկեց Հայկը։

Բայց Սերիկը լսել անգամ չէր ուզում նրան։

— Չէ, քիչ հանգստանանք, կգնանք միասին։

Դեռ չէին հասցրել հանգստանալ, երբ ձորը ծածկվեց ամպերով։ Մթնեց։

Սկսվեց ձյունախառն մրրիկ։

Գնալու մասին մտածելն անգամ ավելորդ էր։

Սերիկը դժվարությամբ ընկերոջը տեղափոխեց մոտակա քարայրը։ Պառկեցին կողք-կողքի՝ տաքացնելով միմյանց։

Ձյունը ծածկեց քարայրի մուտքը։



Քնա՞ծ էին, թե նիրհում էին, երբ լույսի մի ուժեղ շերտ ընկավ նրանց դեմքերին։

— Այստեղ են,— կանչեց շատ ծանոթ մի ձայն։

Քարայրի բացվածքում երևացին հարազատները։ Նրանք մեկը-մեկից խլելով, գրկեցին Սերիկին ու Հայկին և դուրս բերին քարայրից։

Ցուրտ, պարզկա գիշեր էր։

— Բա ինչպե՞ս գտաք,— ուշքի գալով հարցրեց Հայկը։

— Վիրապն ասաց... Ինքն էլ էր ուզում գալ...

— Փակել ենք տանը, որ չգա...

Սերիկը փնտրեց, գտավ Հայկի հայացքը։ Նայեց, ժպտաց։ Ու ջերմացան երկուսն էլ, ասես էլ չէին զգում ցուրտը։





# ԵՐԵՔ աշակերտ

Դ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

*Հրայրի տատիկը, երբ բաց արեց սենյակի դուռը և տեսավ Թոռան տարօրինակ արարքը, զարմանքից մնաց շեմքին կանգնած։ Թոռնիկը բարձրացել էր աթոռի վրա, թափահարում էր ձեռքի փոքրիկ դրոշակները և ինչ-որ անմիտ ու անկապ բաներ էր ասում։ Խաթուն տատիկը ականջի վրայից հեռու տալով գլխաշորի ծայրը, որ ավելի լավ լսի։*

*— Ց. ձ. գիծ, կետ, գիծ, կետ։ Ու. գիծ. կետ. կետ։*

*— Սպասիր, — Հրայրին ընդհատեց Դուրգենը՝ նրա դասընկերը,— ոչ թե գիծ, կետ, կետ, այլ կետ, կետ, գիծ։ Չէ, տեսնում եմ քեզանից բան դուրս չի գա, երեք օր է սովորում ենք, բայց դու ոչինչ չգիտես։*

*Մտածելով, որ դաս են սովորում, Խաթուն տատը չուզեց խանգարել նրանց։ Նա այնպես կամաց ծածկեց դուռը, որ տղաները բոլորովին չտեսան նրա գնալը, ինչպես որ չէին տեսել գալը։*

*Հետևյալ օրը տատիկը նկատեց, որ Հրայրն ու Դուրգենը դարձյալ նույն դասն են սովորում։ Նա այս անգամ ավելի քիչ զարմացավ, իհարկե, էլի մտածում էր, թե այդ ինչ տեսակ դաս է, որ պիտի կանգնեն աթոռի վրա, թափահարեն դրոշակներն ու անվերջ կրկնեն կետ, գիծ, գիծ, կետ։ Բայց տեսնելով պատից կախված քարտեզը, որի մոտ դրված էր աթոռը, նա կարծում էր, թե տղաները աշխարհագրություն են սովորում։*

*Միայն նույն օրը երեկոյան, երբ հայրը սովորականի նման հետաքրքրվեց Հրայրի դասերով ու*

նայեց օրագիրը. տատիկի համար ամեն ինչ պարզ դարձավ։

— Ինչո՞ւ աշխարհագրության դասը չէիր սովորել, որ այսօր «երկու» ես ստացել,— հարցրեց հայրը։

Հրայրը ոչինչ չպատասխանեց. կախեց գլուխն ու կարմրեց մինչև ականջները։ Հայրը նորից կրկնեց հարցը։ Դարձյալ ոչ մի պատասխան։

— Վարդան ջան, մի բարկանա,— միջամտեց տատիկը,— դժվար դաս են տվել։ Երեք-չորս օր է խեղճը աթոռից չի իջել, էլ չեմ ասում, որ դրոշակներն էլ միշտ ձեռքին են։

Հրայրը աչքի պոչով խեթ-խեթ նայեց տատիկի կողմը։ Բայց տատիկն ինչ մեղավոր էր, նա ուզեց պաշտպանել։

— Աթոռի վրա՞… դրոշակները ձեռքի՞ն. էդ ի՞նչ դաս է,— հետաքրքրվեց հայրը։

Հրայրը լավ գիտեր իր հոր բնավորությունը։ Երբ նա մի բանով հետաքրքրվում է, նրանից ոչինչ թաքցնել հնարավոր չէ։ Եվ նա խոստովանեց, որ ինքն ու Գուրգենը Մորզեի այբուբենն են սովորում։

— Իհարկե, լավ բան է իմանալ այդ այբուբենը և կարողանալ խոսել դրոշակներով,— բացատրեց հայրը,— բայց դա ձեր խելքի բանը չէ, դեռ փոքր եք, երբ մեծանաք, նոր,— և ավելացրեց,— իսկ ո՞վ է ասել, որ սովորեք։

Հրայրը դժվարացավ պատասխանել։ Ինչո՞ւ լսեց Գուրգենին։

«Հրայր, արի Մորզեի այբուբենը սովորենք, որ երբ դասարանում ուզենանք մի գաղտնի բան իրար ասել, ոչ ոք չհասկանա», հիշեց նա Գուրգենի խոսքերը։

Ջոկատավարը,— իր վիճակը թեթևացնելու համար ասեց նա։

Չի կարող պատահել,— ասաց հայրը և անցավ մյուս սենյակը

* * *

Երկու օր հետո Հրայրն ու Գուրգենը անհամարձակ կերպով բաց արին պիոներական սենյակի դուռը և կամաց առաջ գնացին։ Նախավերջին դասամիջոցին Հրայրենց ջոկատավար Մարգարիտը երկուսին էլ ասել էր, որ դասերից հետո միասին գնան ավագ ջոկատավարի մոտ։

— Հրա՛յր,— Մարգարիտի հետ գրույցն ընդհատելով խոսեց Գալստյանը,— դու գիտե՞ս, որ ձեր ջոկատը այս տարի որոշել է ոչ մի «երկու» չստանալ։

— Գիտեմ,— աչքերը հատակից չկտրելով, խեղճ-խեղճ պատասխանեց նա։

— Գիտես, բայց խայտառակում ես մեր ջոկատի պատիվը,— վրդովվեց Մարգարիտը,

Ավագ ջոկատավարը նրան լռելու նշան արեց և դիմեց երկուսին.

— Իսկ դուք գիտե՞ք, թե պիոներական կազմակերպությունում քանի «աստիճան» է սահմանված և որ «աստիճանը» ինչ դասարանների պիոներներին է ընդգրկում իր մեջ։

Երկուսն էլ գլխով դրական պատասխան տվեցին։

— Դե ասեք։

— Հիմա պիոներները բաժանվում են երեք «աստիճանի»,— խոսեց Գուրգենը,— առաջին աստիճանի մեջ մտնում են երրորդ և չորրորդ դասարանների պիոներները, երկրորդի մեջ՝ հինգերորդ և վեցերորդ, իսկ երրորդ աստիճանի մեջ մտնում են յոթերորդ և ութերորդ դասարանների պիոներները։

— Ճիշտ է,— ժպտաց Գալստյանը, — ուրեմն՝ գիտեք նաև, որ ամեն մի «աստիճանի» համար հատուկ պահանջներ գոյություն ունեն և չի կարելի, երբ առաջին «աստիճանի» պիոներները թողած իրենցը, առաջ են վազում և ուզում են սովորել երկրորդ և երրորդ «աստիճանի» պիոներներին ներկայացվող պահանջները։ Չէ, որ այդ պահանջներն ընտրելիս հաշվի են առել պիոներների տարիքը, գիտելիքների մակարդակն ու ֆիզիկական զարգացումը։

Եվ նա երկար ժամանակ բացատրում էր, թե որն է Հրայրի ու Գուրգենի սխալը։

— Դրա հետևանքը կլինի այն, որ ոչ պահանջները կիմանաք և ոչ էլ դասերը կսովորեք։

Երբ Հրայրն ու Գուրգենը գլխիկոր դուրս եկան պիոներական սենյակից, Մարգարիտն ասաց, որ «աստիճանների» վերաբերյալ դեռևս մի քանի հարց իր համար պարզ չեն: Եվ ավագ ջոկատավարը բացատրեց...

Պիոներների կողմից ձեռք բերած ունակությունների և հմտությունների ստուգման համար հատուկ քննություն չպետք է կատարել: Դա ստուգվում է զանազան միջոցառումների ընթացքում. սպորտային մրցումներում, հասարակական օգտակար աշխատանքներում, արշավների, խաղերի, ցուցահանդեսների և մրցանակաբաշխությունների ժամանակ: Եթե պիոներները դպրոցական ցուցահանդեսին իրենց ձեռքով պատրաստած իր են ներկայացնում, ընդգրկված են ինքնագործ խմբակներում և ելույթ են ունենում, մասնակցում են սպորտային միջոցառումներին, դրանով նրանք ցույց են տալիս իրենց ունակությունները: Եթե պիոները պատի թերթին նյութ է տալիս, ելույթ է ունենում ընթերցողների կոնֆերանսում, նամակագրական կապ ունի այլ վայրերի, ռեսպուբլիկաների ու երկրների երեխաների հետ, մասնակցում է արտադրության առաջավորների հետ կազմակերպած հանդիպումներին, ալբոմներ է կազմում և այլն, ուրեմն նա դրանով էլ ցույց է տալիս իր գիտելիքները և կանգնում է հասարակական հսկողության տակ:

Իսկ ո՞ւմ է իրավունք տրվում գնահատել պիոներների պատրաստականությունը:

Ամենից առաջ պիոներական կոլեկտիվին՝ օղակին, ջոկատին, ինչպես նաև այն ժյուրիներին, կազմկոմիտեներին, հանձնաժողովներին, որոնք հատուկ կերպով ստեղծվում են դպրոցում՝ այս կամ այն միջոցառումը անցկացնելու համար:

Այդ գործին կմասնակցեն նաև դասղեկները, խմբակների ղեկավարները, արտադպրոցական հիմնարկների աշխատողները, սպորտի վարպետները, գրադարանավարները և այլն:

«Աստիճանների» պահանջների տիրապետման մասին նշումներ են կատարվում «Պիոների անձնական գրքույկում»: Իսկ այդ նշումները կատարելու, ինչպես նաև պիոներին մի աստիճանից մյուսը փոխադրելու իրավունքը տրվում է ջոկատի խորհրդին: Այն պիոներները, որոնք տեղափոխվում են հետևյալ «աստիճանը», ջոկատի հանդիսավոր հավաքույթում դրուժինայի խորհրդի կողմից ստանում են համապատասխան աստիճանի տարբերանշան:

— Ընկեր Դալստյան, մի՞թե հնարավոր է, որ նույն ջոկատի պիոներները միևնույն տեմպերով առաջ շարժվեն և միաժամանակ փոխադրվեն մի աստիճանից մյուսը,— վերջում հարցրեց Մարգարիտը:

Իհարկե ոչ: Միևնույն ջոկատում կարող են լինել և ընկերներից առաջ անցնող պիոներներ, ինչպես նաև կոլեկտիվից ետ մնացողներ: Դրա համար էլ ամեն մի պիոներ պետք է հասկանա, որ իր պատվի գործն է տիրապետել պահանջներին և ետ չմնալ կոլեկտիվից: Իսկ «աստիճանի» այս կամ այն պահանջին տիրապետած պիոներները արժանանում են զանազան տեսակի խրախուսանքների:

Մարգարիտը հրաժեշտ տվեց ավագ ջոկատավարին և դուրս եկավ պիոներական սենյակից: Դպրոցի բակում նա հանդիպեց Հրայրին ու Գուրգենին: Տեսնելով իրենց ջոկատավարին, նրանք ընդառաջ եկան:

Մեր պատճառով ընկեր Դալստյանը Ձեզ բան ասա՞ց, հա՞, մեղավորի հայացքով Մարգարիտին նայելով հարցրեց Հրայրը և չսպասելով պատասխանի՝ ավելացրեց,— ճիշտ եմ ասում, ընկեր Մարգարիտ, էլ չենք անի: Հետո նա դիմեց Գուրգենին.

— Չէ՞, Գուրգեն:

Գուրգենը գլխով արեց:



Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

# ՀԱԿՈԲ ԿՈՋՈՅԱՆ



Դուք անշուշտ կարդացել եք «Հայկական ժողովրդական հեքիաթները» գիրքը, կարդացել եք նաև Ստեփան Զորյանի «Հեքիաթները»։ Այդ երկու գրքում էլ շատ գեղեցիկ նկարներ կան։ Իսկ գիտե՞ք, որ այդ գրքերը նկարազարդել է Հայաստանի ժողովրդական նկարիչ Հակոբ Կոջոյանը։

Բայց մի՞թե միայն այդ գրքերի նկարներն են պատկանում նրան։ Հակոբ Կոջոյանը հայ նկարչության ականավոր վարպետներից մեկն է և շատ ու շատ գրքեր է նկարազարդել։ Նա ստեղծել է գրաֆիկական ու գեղանկարչական բազմաթիվ ստեղծագործություններ, որոնք աչքի են ընկնում իրենց ինքնատիպությամբ, պարզությամբ ու արտահայտչականությամբ։

Կոջոյանը սովետահայ գրաֆիկայի հիմնադիրներից մեկն է և իր հիանալի ստեղծագործություններով հարստացրել է հայկական գրաֆիկական արվեստը։

Այս նկարները մեծ վարպետի լավագույն գործերից են, որ մենք տպագրում ենք նրա ծննդյան 75-ամյակի առթիվ։



Հ. ԿՈՋՈՅԱՆ — Հազարան բլբուլ

# Հայրենիք

ՍԱՐՄԵՆ

Մեր մեծ Հայրենիք,
Ի՞նչ կա աշխարհում
Քեզնից անուշիկ
Ու քեզնից սիրուն։

Սարերդ՝ բարձրիկ,
Դաշտերդ՝ անծայր,
Ջրերդ՝ քաղցրիկ,
Արևդ՝ պայծառ։

Խաղաղ երկնիդ տակ
Ազգերը ազատ
Կերտում են նոր կյանք
Դաշինքով անխախտ։

Դու տվել ես մեզ՝
Ծաղիկ ու ծիծաղ,
Պուրակ ու պարտեզ,
Թե՛ ուսում, թե՛ խաղ։

Դու տվել ես մեզ
Թռիչքի թևեր,
Որ բարձրանանք մենք
Աստղերից էլ վեր։

Դու տվել ես մեզ
Ամե՛ն, ամեն բան,
Մեր դեմ բացել ես
Գալիքի ճամփան։

Թող վառվեն, խնդան
Քո լույսերը, մա՛յր,
Դու ողջ մարդկության
Փարոսն ես անմար։



ՎԱՀԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

1

*Կոլտնտեսության շոֆեր Գարիկ Միկաելյանը նրան տեսել էր Երևանի ծայրամասային փողոցներից մեկում։ Բոթոթը դուր էր եկել իրեն, գցել էր ավտոյի թափքն ու բերել։*

*Երբ նա նոր էր տուն հասել և բոթոթի առաջը դրել կերակրի ու հացի փշրանքներով լցուն ամանը, իսկույն հավաքվել էին գյուղի երեխաներն ու հետաքրքրասերները։*

*— Դա իսկի էլ շուն չէ,— պնդեցին մի քանիսը։*

*— Զարմանալու ի՞նչ կա,— ասաց Վռամ Օհանը,— որ այդ մականունը ստացել էր ամեն ինչի մասին իսկույն կարծիք հայտնելու համար։— Երևանում զոոպարկ կա, այնտեղ լիքը գայլեր են, մեկն ու մեկի ծագը դուրս է փախել... մեր Գարիկն էլ հանդիպել՝ դրել է ավտոն ու բերել։*

*— Չե՞ք տեսնում ինչպես չար աչքերով է մեզ նայում,— հեղինակավոր տոնով ասաց Փանոսը,— ոտից գլուխ գայլ է...*

*Հանկարծ աշխուժացան բոլորը։*

*— Գալի՜ս է, գալի՜ս է,— կանչեցին երեխաները, իսկ ջահելներից մի քանիսը տեղ բաց արին։*

*Գալիս էր ուստա Ջահանը՝ հարյուրը բոլորած պատկառելի ծերունին։*

*Տեղավորվելով իրեն առաջարկած աթոռի վրա, ուստա Ջահանը աշխուժացած շունչ քաշեց, ծնոտը հենեց հաստ ձեռնափայտի գլխին, ճպճպացրեց կոպերի փոնթերի մեջ կորած, ջրակալած աչքերը, մի կերպ նշմարեց քիչ հեռու կանգնած Օհանին և ինքնագոհ ասաց.*

— Ա՛յ տղա, Վռամ, բա ասում էիր, թե Գարիկը երևանից զայլի ձագ է բերել շան փոխարեն։

— Ուրեմն զայլ չի՞,— հարցրեց Վռամ Օհանը։

— Իհարկե, զայլ չի... Ես հինգ մանեթ պես գինեմ էլ բանը, բայց ուզում եմ, որ դուք էլ իմանաք։ Հիմա Չրչատյանի շունը կգա և ձեր աչքով կտեսնեք, Զահանը ճի՞շտ է ասում, թե չէ։

Ծերունու խոսքը կիսատ մնաց։ Այս ու այն կողմից ուրախ բացականչեցին։

— Բաժուրը եկավ...

— Բաժուրին բերեցին...

Դեղ, հսկայական շունը, որ բառ երևույթին գիտեր, որ իրեն որսի համար են բերել, տիրոջ կողքից քայլում էր զգույշ և կանգ առավ խմբվածներից մի քանի քայլ հեռու։

Պառավ մակ կուչ եկած չիփկը Բաժուրին տեսնելուն պես, վեր կացավ, սրեց ականջները, շարժեց պոչը և այնպես նայեց նրան, որ կարծես ասում էր.

— Բաժուր, մենք ազգականներ ենք, չե՞ս ճանաչում ինձ։

— Դե, հիմա լավ նայեք ձեր զայլի ձագին,— ասաց ուստա Զահանը։

— Ախր, եղպես չի լինի,— գանգատվեց Վռամ Օհանը.— շանը պիտի բաց տալ...

— Բա՛ց, բա՛ց...— հորդորեց Բաժուրին տղաներից մեկը։

— Բաժուր, բռնի՛, Բաժուր, բռնի՛ր,— հրամայեց շան տերը։ Բայց Բաժուրը կանգնած մնաց տեղում և միայն շարժեց պոչը։

Չիփկը կամաց-կամաց առաջացավ դեպի գամփռը և կանգ առավ ուղիղ նրա քթի տակ։ Բաժուրը հոտոտեց բոթոթի դունչը և սկսեց լիզել նրան։

Բոլորն ուրախացան։ Միայն Վռամ Օհանը և էլի մի երկու հոգի, որ պնդում էին, թե բոթոթը զայլի ձագ է, վեր կացան, սուս ու փուս գնացին։

Միսակի հայրը՝ Գարիկը, որ ամենից շատ էր ուրախացել չիփկի համար, մոտեցավ ուստա Զահանին և հարցրեց.

— Անունը ի՞նչ դնենք, ուստա Զահան։

— Անունը դիր Չաքիր, դա իմ ամենալավ շան անունն է եղել։

2

Մի տարի հետո Չաքիրը դարձավ գյուղի ամենաաչքի ընկնող շունը։ Միայն նրա նկատմամբ շարունակում էին իրենց թշնամությունը Վռամ Օհանն ու Լոլոզ Սիմոնը։

— Արա, էդ գելի ձագի հետ ի՞նչ անենք հը՞,— գանգատվեց Վռամ Օհանը, Լոլոզ Սիմոնին։

— Շատ ես շատախոսում, Վռամ, հանգիստ սկսեց իր խոսքը Լոլոզը, հրա համբերիր, յա՛ ախպերդ նրա գլուխը կուտի, յա՛ նա ախպորդ գլուխը։

— Ախր ո՞նց,— համառեց Վռամ Օհանը։

Լոլոզ Սիմոնը ջղայնացավ, կռացավ գետնից վերցրեց մի մեծ քար և որքան ուժ ուներ խփեց մի քարի, փշրելով այն։

— Ա՛յ, էսպես... հիմա հասկացա՞ր...

— Հասկացա,— ուրախությունը հազիվ զսպելով պատասխանեց Վռամ Օհանը։ Երեկոյան Վռամ Օհանը ասաց իր տղային.

— Լսիր ինչ եմ ասում, ոչ որի բան չես ասի, վաղը դասերից հետո դու և Սուրենը մյուսներից ծածուկ կտանեք Չաքիրին և կկապեք գոմերի կողմերը, ես ու Սուրենի հերն էլ էնտեղ կլինենք...

— Որս անելու, չէ՞, հայրիկ,— ուրախացավ Սահակը։

— Որս անելու բա՛,— պատասխանեց Վռամ Օհանը։

Բայց հանկարծ ինչ-որ բան հիշեց Սահակը ու տխրեց։

— Հը, ի՞նչ պատահեց...

— Հայրիկ, ախր էդ Չաքիրը, որ սատկացնես, տանից Միսակը մի քայլ չի անի։

— Դու դրա մասին մի՛ մտածիր,— հանգստացրեց նա որդուն,— ես կանեմ ճարը, որ նա ձեր հետևից վազելով գա։

— Բա որ չեկա՞վ։

— Որ չեկավ, Միսակին էլ հետներդ կբերեք. ուրիշ ոչ որի, հասկացա՞ր։

— Հասկացա,— պատասխանեց տղան։





3

Պայմանավորված ժամին Սուրիկն ու Սաշոն մտնեցին Գարիկ Միրզոյանի տունը: Իրենց համար պատրաստված բաղնիկից դուրս եկավ շունը, գնաց նրանց ընդառաջ, թեթևակի շարժեց պոչը՝ հասկացնելով, որ ճանաչում է նրանց և կանգ առավ:

— Զարիկ, գնանք սարը ման գալու, հա՞, — կամաց ասաց Սուրիկը և շոյեց նրա գլուխը:

Շունը փաղաքշանքին պատասխանելու փոխարեն, հոտոտեց օդը:

— Սպասիր ես դրան խելքի բերեմ, — ասաց Սաշոն, — չի՞ տեսնում մսի հոտն առել է: Դե, գնանք, — մսի կտորը ցույց տալով ասաց Սաշոն:

Սակայն Զարիկը տեղից չշարժվեց:

— Արա՛, մի կտոր միս գցիր գետնին, որ ուտի, համը բերանն ընկնի, թե չէ...

Սաշոն դանակով արագ կտրեց մսի մի կտոր և նետեց շանը, բայց Զարիկը դարձյալ մնաց անդրդվելի:

Այդ ժամանակ տնից դուրս եկավ Միսակի տատիկը: Տեսնելով, որ կանգնել, շանն են նայում, ասաց.

— Եկեք ներս, եկեք, բալիկներ, չվախենաք, մեր Զարիկը չի կծում խաղընկերներին:

Կես ժամից հետո Միսակը իր երկու ընկերներով, Զարիկի հետ միասին, գնում էին դեպի գոմերը...

Լոլոն ու Վաչագը նստած աղբյուրի ժայռի վրա, թարմ կաթ էին ուտում և զրուցում:

— Այ, տեսնում ես, Թորոս, տղաները գալիս են, — նկատեց Վաչագ Օհանը:

— Ափսոս, որ Միսակին էլ են բերել, — ասաց Լոլոն:

— Քանի անգամ ասացի լակոտին, որ մարդ չբերեք հետներդ, — նեղացավ Վաչագ Օհանը, — մարդու չեն լսում իմիկվա երեխաները:

Թորոսը շուրջը նայեց:

— Հը՞, շանն ես որոնում:

— Ի՞նչ եղավ շունը, — անհանգստացավ Թորոսը:

— Բամբուր, Բամբուր, — կանչեց Հովիկը:

Բամբուրը հաչոցի պես ինչ-որ ձայներ հանեց և մնաց տեղում:

Բամբուրը բնազդից շատ է գլխի ընկել, թե ինչ պիտի անել, — հեգնեց Հովիկին Լոլոն: Տես կանգնած տեղը շունը իրեն ուտում է, բայց տեղից չի շարժվում, երևում է վախենում է անտերից:

— Մի՛ փութացեք, հրա՛ կտեսնեք, վախենում է, թե չէ, — ասաց վիրավորված Թորոսը:

Հովիկի շունը վնգստաց, մի քիչ հետ եկավ, բայց էլի հետ դարձավ և հարձակողական դիրք գրավեց:

— Վախենում է, ախր էդ անտերը մի արջանի չափ է:

— Ուզում է մի եզան չափ լինի, — վիրավորված պատասխանեց Թորոսը, — Բամբուրը վախեցողը չի, կտեսնեք:

Հանկարծ երևաց Զարիկը: Սուր ականջները ուռած, գլուխը բարձր, քիթը հպարտ բռնած, ինքնավստահ, թեթև վազքով գալիս էր, իսկ նրա հետևից անհուն հետաքրքրությամբ, որսի կարոտը սրտներում, վազում էին Միսակն ու իր ընկերները:

Շների միջև եղած տարածությունը հասել էր հարյուր մետրի:

Բամբուրը մի անգամ էլ շուռ եկավ, որ փախուստ տա, բայց Թորոսը այլևս դիմանալ չկարողացավ. նա մահակը ուսին, շանը հորդորելով, վազեց դեպի նա: Շունը սիրտ առավ, արագ պոկվեց տեղից ու նետվեց դեպի Զարիկը: Վերջինս կանգնած տեղում ընդունեց Բամբուրին առանց թշնամական վերաբերմունքի: Լոլոց Սիմոնը, որ շատ լավ գիտեր Զարիկի բնավորությունը, քարով խփեց նրան, սա կանգ առավ, կատաղած ցույց տվեց սպիտակ, ահավոր ժանիքները, իսկ Լոլոն վերից սկսեց քարե կարկուտ տեղալ նրա վրա. այս հանգամանքը գրգռեց նաև Բամբուրի հարձակողական տրամադրությունը և նա նետվեց Զարիկի վրա:

Կծում էին իրար երկուսն էլ ահավոր կատաղությամբ:

— Զա՛րկ, զա՛րկ, ես դրա տիրոջ ինչն եմ ասել, — քաջալերում էր Վաչագը Լոլոյին:

— Կամա՛ց, կամա՛ց, ախր Բամբուրին կսպանի, — գանգատվում էր Հովիկը, որ չգիտեր, թե ինչ անել: Եկան նաև տղաները: Նրանք ուզեցին իրարից բաժանել շներին, հաշտեցնելու փորձ անել, բայց Լոլոց Սիմոնը չթողեց. ամեն մեկին մի հարված հասցնելով մի կողմ տարավ նրանց:

— Ձեր ի՞նչ գործն է, որ խառնվում եք, — կեղծ հոգատարությամբ ասաց նա:

Շների կռիվը շարունակվում էր։ Նորից Ջաքիրը իր հակառակորդին գետին տապալեց և չնայած հովվի հարվածներին, չէր ուզում բաց թողնել Բաֆուրի կոկորդը։

— Բռնի՛, ախր ինչո՞ւ ես խփում Ջաքիրին,— լալիս ու պաղատում էր Միսակը։

— Քեզ ասում եմ հեռու կաց, թե չէ...— գոռում էր հովիվը և հարվածներ տեղում։ Լոլոզն ու Վռազը հեռու կանգնած թամաշա էին անում։

Ջաքիրը հանկարծ բաց թողեց իր տակ թփրտացող շանը և արագ փախավ դեպի գյուղը։

— Բաֆո՜ւր, հա Բաֆուր... հասի՛ր, հա՛, հասի՛ր...

Բաֆուրը արյունլվված գնում էր փախչողի հետևից, և արդեն քիչ էր մնում, որ հասներ շանը, բայց հանկարծ տեղի ունեցավ անսպասելի բան։ Փախչող շունը ետ դարձավ, Բաֆուրին տակն առավ ու սկսեց գզել։

— Որ ասում եմ գայլ է, գայլ է է՛լի,— գոռգռաց Վռազը,— տեսա՞ք, խաբեց շանը, տարավ ու տես ինչ է խեղդում, էլ ո՞ւր ես կանգնել, թամաշա անում,— դարձավ նա հովվին,— շուտ հասիր, թե չէ կսատկացնի...

— Վա՜յ, ձեր տունը քանդվի, ձեր տոհմը կոտրվի, էդ ինչ օյին էր սարքեցիք իմ գլխին,— ասաց ու վազ տվեց դեպի կռվող շները, որոնք բավական հեռու էին արդեն։

— Գնանք,— ասաց Լոլոզը Վռազին։

— Վա՜յ, Բաֆուրս գնաց...

— Տո ի՞նչ սուգ ու շիվանի ժամանակ է,— բարկացավ հովվի վրա Լոլոզը,— չե՞ս տեսնում շանը խեղդեց պրծավ, կանգնել թամաշա՞ ես անում...

Լոլոզը վերցրեց մի փթանոց քար և մոտեցավ շներին.

— Հորողբեր, ախր, Ջաքիրը,— աղերսեց Միսակը։

— Դե՛ նը կորիր, քեզ էլ ու քո Ջաքիրին էլ...
և նա քարը երկու ձեռքով բարձրացրեց գլխից վեր և որքան ուժ ուներ բաց թողեց Ջաքիրի վրա, բայց քարը իր ամբողջ ծանրությամբ ընկավ Բաֆուրի գլխին։

Կիսախեղդ շան բերանից արյուն հոսեց և նա մի քանի անգամ ոտները թույլ շարժեց ու հանդարտվեց...

## 4

Զարմանալի շուն էր Ջաքիրը։

Ջաքիրի համար հատկապես անտանելի էին Լոլոզ Սիմոնը, Գարիկ Միկայելյանի հորեղբոր տղան, որ աշխատանքից փախչող ու անբանի մեկն էր և երկարահասակ լինելու պատճառով ստացել էր այդ մականունը։ Ջաքիրը չէր սիրում նաև Վռազ Օհանին և գյուղի կատարածու Փիլոսին։

Օրվա որ ժամին էլ որ Լոլոզը գալու լիներ Գարիկենց տուն, Ջաքիրը հարձակվում էր նրա վրա, փակում ճանապարհը, չէր թողնում, որ նա ներս գնա։ Կատաղում էր Լոլոզը, խփում շանը, բայց ոչինչ չէր օգնում. մինչև տանից մեկն ու մեկը դուրս չգար, Լոլոզը ներս չէր գնա։

Ինչ անհասկացող շուն է, եղբա՛յր, կորցրեք թող գնա... Մեր դուռը կպած է ձեր դռանը, էս քանի ամիս եղավ. օր ու գիշեր տեսնում է ինձ ու չի ճանաչում։

— Չէ, ղուրբա՛ն, Ջաքիրը շատ լավ շուն է, շուտ էլ մարդկանց ճանաչում է, համա ում որ մի անգամ չսիրեց, էլ չի սիրի։ Էնա խեղճ Փիլոսը՝ կատարածուն, մեր տանը մոտիկ չի գալիս, կանգնում է հեռու՝ բարձր գոռում, որ դուրս գանք։

Անցնում էր ժամանակը։ Ջաքիրի թշնամիները ինչ միջոցի էլ դիմեցին, շանից ազատվել չկարողացան։ Բաֆուրի դեպքից հետո նրանք ուզեցին թունավորել նրան, «ասեղ» գցել, բայց չհաջողվեց.

Գարիկ Միկայելյանը անախորժություններից խուսափելու համար ցերեկները կապում էր շանը, իսկ գիշերները ազատ արձակում։ Շունը ոչ միայն արթուն հսկում էր տիրոջ տունը, այլ ամբողջ շրջապատը։ Հանրային հոտերի և պահեստների պահակները ավելի ապահով էին դարձել Ջաքիրի շնորհիվ։



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Աշնան ամպամած գիշեր էր։ Պահակները անձրևից պատսպարվելու համար հավաքվել էին պատի տակ և հուշեր էին պատմում... Հանկարծ շան հաչոց լսվեց, որը շուտով լռեց և վերածվեց կատաղի խռխռոցի...

Ջաբիրի հաչոցն էր,— ասաց ծերունի Մակարը և տեղից վեր կացավ։ Նրա հետ վեր կացան մյուս պահակները և վազեցին դեպի դեպքի վայրը։ Հորդ անձրև էր տեղում, հանկարծ փայլատակեց կայծակը... Պահակները նշուլում տեսան մի քանի փախչող մարդկանց և դաշունահար եղած շանը, որ թաթերը դրած ինչ-որ մեկի մեջքին, ցնցում էր նրան... Վայրկյանական փայլատակումից հետո ամեն ինչ թաղվեց նորից մթության մեջ։

Պահակները լապտերներով մոտեցան։ Մթերային պահեստի դռանը ընկած էր Ջաբիրը։ Նրա դաշունահար կողքից արյուն էր հոսում, մի թաթը դրված էր պարկով լիքը գլուխ պանրի վրա, իսկ մյուս թաթի ճիրաններում ամուր պահված էր հնամաշ պիջակի մի պոլ, նա հանել էր գողի մեջքից։

Առավոտյան եկան միլիցիայի ներկայացուցիչները, քննություն կատարեցին, պարզվեց, որ Ջաբիրի ճանկում մնացած պիջակի պոլը Լոլոզ Սիմոնինն է։ Հարցաքննությունից պարզվեց նաև, որ նրա հետ եղել են Վոլոդ Օհանը և ծույլ Փանոսը։

Նոր միայն պարզվեց Ջաբիրի նկատմամբ ունեցած նրանց ատելության բուն պատճառը։



# ԽՌՈՎԱՐԱՐ ՓՂԵՐԸ

Ն. ՏԻԽՈՆՈՎ

Բիրմայի արևադարձային անտառներում աճում են տեքի կոչվող ծառեր, որոնք ամուր և թանկարժեք շինանյութ են դառնում։ Տեքիները աճում են անտառի խորքում, ծառերի արանքներում։ Դրա համար էլ ծառաբները տեղափոխելը շատ դժվարին գործ է։ Ծառաբները անտառից գետափ են քարշ տալիս փղերի միջոցով։ Նրանք կիլոմետրերով քարշ են տալիս ծառերը, երբեմն կնճիթով քաշելով, երբեմն ոտքով, երբեմն ճակատով հրելով։ Ծառաբները դեմ են առնում չկտրված ծառերին և անտանելի դարձնում փղերի աշխատանքը։

Սովորաբար կտրում են տեքի հասունացած ծառերը, իսկ ով մատղաշներն է կտրում, նա օրենքով պատժվում է։

Եվ ահա մի անգամ, օգտվելով այն հանգամանքից, որ ոչ ոք իրեն չի նկատի խոր թավուտում, մի անգլիացի պլանտատոր կտրում էր տեքի ջահել ծառերը և շտապ-շտապ տեղափոխում գետափ, քանի դեռ գետը չէր հորդացել։

Մի առավոտյան անտառի նրա տնակը եկավ վերակացուներից մեկը և ձայն տվեց.— Պարո՛ն, վայրի փղեր են եկել, ի՞նչ անենք։

— Ո՞ւր են եկել վայրի փղերը։

—Նրանք մեր ընտանի փղերի հետ գալիս են ու նայում, թե ինչպես են մերոնք աշխատում։

— Մի՛ քշիր նրանց,—ասաց անգլիացին,—որովհետև եթե նրանք կռվի բռնվեն մերոնց հետ կամ ջղայնանան մարդկանց վրա, մեզ մեծ վնաս կըհասցնեն և կարող են ամբողջ աշխատանքը տապալել։ Հետևիր նրանց և, եթե որևէ բան լինի, ինձ ասա։

Վայրի փղերը ցրվել էին բոլոր տեղամասերում, որտեղ աշխատում էին ընտանի փղերը։ Նրանք դիտում էին իրենց եղբայրակիցների աշխատանքը և, կարծես միտք էին անում, թե ինչու են սրանք քարշ տալիս ծանր ծառաբները։ Նրանք ոչ մի ուշադրություն չէին դարձնում մարդկանց վրա, իսկ մարդիկ, հիշելով իրենց տիրոջ հրամանը, երբեք չէին հետապնդում նրանց։

Այսպես, օրեցօր դիտելով աշխատանքը, վայրի փղերը սկսեցին ընտանի փղերի հետ աշխատանքի գալ և միայն այն ժամանակ հեռանալ դեպի ջունգլիները, երբ ընտանի փղերը նույնպես գնում էին հանգստանալու։ Ամեն օր անգլիացուն զեկու-

ցում էին նրանց վարքի մասին։ Եվ մի անգամ նա մի զարմանալի նորություն իմացավ։ Եկավ վախից գլուխը կորցրած վերակացուն և ասաց, որ ահա մի քանի օր է, ինչ վայրի փղերը սկսել են աշխատել ընտանի փղերի հետ։ Ընտանի փղերը նրանց ցույց են տալիս, թե ինչպես պետք է աշխատել։

Հրճվում էր անգլիացին։ Ափսոսում էր, որ իզուր այդքան փղեր էր ստացել։ Չէ՞ որ սրանցով էլ կարելի էր շատ ու շատ ծառեր տեղափոխել։

Նա ինքն էլ ուզեց համոզվել այդ բանում և գնաց դեպի վերև, անտառի այն մասը, որտեղ ընտանի և վայրի փղերը աշխատում էին միասին։ Ամեն ինչ այնպես էր, ինչպես որ պատմել էր վերակացուն։ Վայրի փղերը անվարժությունից փրնչալով ու հևալով, կողք-կողքի աշխատում էին իրենց ընտանի եղբայրների հետ։ Երևում էր, որ նրանց համար ծանր էր ու տհաճ իրենց արածը, անհասկանալի, թե ինչո՞ւ պետք է ծառերը ճակատով գլորել։ Բայց և այնպես շարունակում էին աշխատել՝ աչք տալով ընտանի փղերին։

Անգլիացին ուրախացավ և սկսեց հաշվել, թե որքան կվաստակի նոր փղերի աշխատանքից, իսկ գործը ավարտելուց հետո՝ դրանց վաճառքից։

Որոշ ժամանակ հետո փղապանները և վերակացուները այնպես էին ընտելացրել վայրենի փղերին, որ սկսել էին գոռալ նրանց վրա և նույնիսկ ծեծել նրանց, ինչպես ընտանի փղերին։

Եվ ահա մի անգամ անգլիացին երազում տեսավ, որ ինքը հարստացել է ինչպես առաջ, որ նրա պալատում փղերը աշխատում են իբրև ծառաներ։ Նրանք են պահպանում իրեն և ճոճում իր ճոճը՝ այգում քնելիս։

Զարթնելով, նա ուղևորվեց անտառ՝ տեսնելու փղերի աշխատանքը։ Բայց նա դրանցից ոչ մեկին չգտավ։ Անգլիացին շատ զարմացավ։ Շուրջը թափթփված էին տեքի ծառերը։ Ոչ ոք չկար։ Ու՞ր կորան բոլոր փղերը և վերակացուները։

Վերջապես երեկոյան վերակացուները եկան նրա մոտ՝ տանջված, քրտնակոլոլ, վախվորած աչքերով և ասացին.

— Նրանք հեռացա՜ն, նրանք գնացի՜ն...

— Ինչպե՞ս թե. փղերը գնացի՞ն,— գոռաց անգլիացին։— Վայրի փղերը գնացին, իսկ մերո՞նք։

— Մերոնք էլ գնացին նրանց հետ։ Նրանք առավոտյան աշխատանքի դուրս եկան, և հայտնվեցին վայրի փղերը։ Նրանք խմբվեցին ու միասին թողեցին հեռացան։ Մենք փորձեցինք զոռով ետ դարձնել, բայց նրանք մեզ կնճիթներով վերցրեցին գցեցին գետին, կնճիթները ճոճեցին մեր գլուխների վրա և ոտքերով ցույց տվեցին, որ եթե հետապնդենք, մեզ կկոխկրտեն։

— Ախր ինչպե՞ս եղավ, ինչո՞ւ այդպես եղավ,— կատաղած հարցրեց անգլիացին։

— Վայրի փղերը մերոնց համոզեցին հեռանալ մեզանից,— ասաց ծեր փղապանը։— Ես փղերին



ճանաչում եմ մանկուց։ Սա երկրորդ դեպքն է իմ կյանքում։ Այսպես եղավ մեկ էլ երեսուն տարի առաջ, այս կողմերում։ Վայրի փղերը եկան դիտելու, թե ինչ են ապրում ընտանի փղերը։ Նրանք փորձեցին աշխատել սրանց հետ։ Նրանք հասկացան, որ ավելի լավ է ապրել ազատ անտառում, քան առավոտից երեկո ծանր ծառեր գլորել, չգիտես թե, ինչու։ Նրանք պայմանավորվեցին մեր փղերի հետ, և սրանք էլ թողին աշխատանքը ու նրանց հետ հեռացան։

— Պետք է փղերին անհապաղ վերադարձնել։ Պետք է շուրջկալ անել։ Նրանք խռովարարներ են, — բացականչեց անգլիացին։ — Իսկ վայրի փղերին պետք է գնդակահարել։

Բայց վերակացուն գլուխն օրորեց.

— Նրանց էլ չե՞ս հասնի։ Նրանք հեռացել են այս տեղերից։ Մեր փղե՛րն էլ չեն վերադառնա աշխատանքի։ Մի անգամ էլ է այդպես եղել։ Իսկ ինչո՞ւ վերադառնան նրանք։ Նրանց համար անտառում էլ լավ է։ Վերադառնում են միայն մարդիկ, որովհետև միայն մարդիկ պետք է մարդկանց մոտ ապրեն, թեկուզ և վատ ապրեն։

— Բավական է գլխիցդ դուրս տաս, — ասաց անգլիացին։ — Լսի՛ր, ինչ որ աղմուկ է լսվում։

Բոլորը ականջ դրին, բայց այդ միայն լեռնային հեղեղի խշշոցն էր, որ գալիս էր հեռվից։ Խայտաբղետ թռչուններն էին ծլվլում, վիճում կապիկների հետ։

— Նրանք չե՛ն վերադառնա, — ասաց վերակացուն։ — Ես գիտեմ. նրանք էլ չեն վերադառնա։

Անգլիացին արնակալած աչքերով նայեց շուրջը թափթփված ծառերին, որոնք նա կտրատել էր տվել գողունի, և չարությամբ մտածեց, որ օրերս գինը կբարձրանա, որ հարստության մասին իր երազը միայն երազ մնաց։

Իսկ շուրջը լռություն էր։ Թափթփված ծառերը ասես ծաղրում էին նրան, նրան ծաղրում էին փախած փղերը, որոնք հեռացել էին հեռո՜ւ — հեռո՜ւ, արևադարձային անտառի խորքերը։



Նկ. Հ. ԳԱԼԵՆՑԻ



**Բաժինը վարում է պրոֆեսոր ԳԻՏՈՒՆՅԱՆԸ**

## Աշխարհ, որ կառուցված է պատմերով*)

Ա. ԴՈՐՈԽՈՎ

### ԳՈՒԼՊԱՆԵՐ՝ ԱԾՈՒԽԻՑ ԵՎ ԱՄԱՆԵՂԵՆ՝ ԳԱԶԻՑ

Մարդը անսպասելիորեն հարստացավ։ Պարզվեց, որ նա շրջապատված է հումքի անսպառ պաշարներով, որոնցից կարելի է ստանալ բազմաթիվ շինվածքներ։ Այդ հումքը կամ շատ էժան է, կամ բոլորովին արժեք չունի։ Դեռևս մոտիկ անցյալում մետաքսը, որից կարելի էր ստանալ գեղեցիկ և ամուր գործվածքներ և ուստայնից էլ նուրբ գուլպաներ, կարող էին գնել միայն հարուստները։ Մետաքս ստանալու համար հարկավոր է աճեցնել բազմաթիվ թթենիներ, բազմացնել անհաշիվ քանակությամբ շերամի թրթուրներ, բոժոժները զգուշությամբ հավաքել և, շոգու վրա մատները այրելով, քանդել թելերը. ի՜նչ խոսք, որ թանկ էր նստում։ Իսկ այսօր ամեն մի աղջիկ կարող է հագնել գեղեցիկ շրջազգեստ և նուրբ գուլպաներ՝ գործված արհեստական մետաքսից, մետաքս, որի թելերը ավելի բարակ և ամուր են, քան բոժոժի թելերը։ Եթե քիմիկոսները նախկինում արհեստական մետաքսաթելը ստանում էին սոճու և կաղամախու փայտից, ապա ներկայումս ստանում են այն՝ ածուխից ու նավթից։ Շուտով բրդեղենը նույնպես կըստացվի նավթից և ածուխից։ Իսկ նավթաթորման գործարանների ծխնելույզներից առատորեն դուրս հորդող սովորական գազը քիմիկոսներն օգտագործում են ամանեղեն պատրաստելու համար։ Այդ ամանեղենը ավելի ամուր, գեղեցիկ ու թեթև է, քան

*) Սկիզբը նախորդ համարում

թուչե ու կավե ամանեղենը: Ինչ վերաբերում է ավտոդողերին, ապա նրանց պատրաստման համար կարելի է օգտագործել շատ անգամ ավելի էժան հումք՝ բնական գազը, որն անսպառ քանակությամբ դուրս է հորդում երկրի ընդերքից: Բնական գազի պաշարները Սովետական Միությունում այնքան շատ են, որ եթե մենք ունենայինք բավարար քանակությամբ քիմիական գործարաններ, ապա յուրաքանչյուր տարի կունենայինք կես միլիոն տոննա արհեստական կաուչուկի արտադրանք, որը կապահովեր ավտոդողերով մեր բոլոր բեռնատար մեքենաներն ու տրոլեյբուսները: Դրա համար պետք է ունենալ շատ և շատ գործարաններ: Ահա թե ինչու Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն որոշում ընդունեց՝ մոտակա տարիներում կառուցել այնքան նոր քիմիական գործարաններ, որոնք կկարողանան մեր արդյունաբերության մակարդակը մի քանի անգամ բարձրացնել: 1965 թվականի վերջին մենք պետք է արտադրենք հինգ անգամ ավելի արհեստական թել, ութ անգամ ավելի պլաստմասսա և երեք ու կես անգամ ավելի սինթետիկ կաուչուկ: Իսկ մինչ այդ, բազմաթիվ գիտական ինստիտուտներ ու լաբորատորիաներ մշակում են նորանոր միջոցներ՝ արհեստական նյութեր ստանալու համար, իսկ քիմիական գործարաններն էլ արդեն սկսում են թողարկել այդ նյութերը... Ի՞նչ նյութեր են դրանք:



## ԳՈՅՈՒԹՅՈՒՆ ՉՈՒՆԵՑՈՂ ԳԱԶԱՆՆԵՐԻ ՄՈՐԹԻՆԵՐԸ

Մեզ վաղուց ի վեր հայտնի է, որ սարդոստայնից բարակ ու թեթև բան գոյություն չունի աշխարհում: Այնինչ Միտիշչի քաղաքի քիմիական գործարանում արդեն պատրաստում են այնպիսի արհեստական թել, որ երկու անգամ բարակ է սարդոստայնի թելից: Իհարկե, գործարանի ցեխերում այդ թելը արտադրում են պողպատե սարդերը, որոնց փորիկները պատրաստված են պլատինից: Միայն թանկարժեք պլատինի մեջ կարելի է ծակել այնպիսի անցքեր, որոնք քանի անգամ բարակ են մարդու մազից: Հենց այդպիսի նեղ անցք ունեցող պլատինե մաղից անցկացնում են հեղուկացրած ցելյուլոզը, որը ստացվել է զանազան քիմիական մշակումներով և ունի շագանակի գույն: Այդ հեղուկը անցնելով հազիվ նկատելի անցքերով՝ օդում ամրանում է ու վերածվում թեթև ու բարակ թելի: Սակայն ա՛յդ թելը միայն արտաքնապես է նման սարդոստայնի թելին, որը փչելուց անգամ կտրըվում է: Այնինչ արհեստական մետաքսաթելը անչափ




ամուր է: Բացի դրանից, ամենաաշխատասեր մետաքսի որդն իր ամբողջ կյանքի ընթացքում արտադրում է հազիվ կես գրամ թել, և որպեսզի մեզ հաջողվի ստանալ հարյուր կիլոգրամ բնական մետաքս, անհրաժեշտ է աճեցնել երկու հարյուր հազար թրթուր. մինչդեռ նույն քանակի արհեստական մետաքս ստանալու համար պահանջվում է ընդամենը մեկ խորանարդ մետր սոճու կամ եղևնու փայտ: Նույն եղևնու կամ սոճու փայտից քիմիկոսները սովորեցին պատրաստել նաև արհեստական բուրդ: Նրանց ձեռք բերած միջոցներով մի մեծ քիմիական գործարան մի տարում կարող է այնքան բուրդ արտադրել, ինչքան կարելի է ստանալ տասն և ութ միլիոն գլխաքանակ ունեցող ազնվացեղ ոչխարի հոտից: Արհեստական բրդից գործված և կարված կոստյումները և բաճկոնակները նույնքան շքեղ են, տաք ու չեն ճմրթվում, որքան բնական բրդից կարվածները, բայց և ունեն առավելություններ, նրանց ցեցը չի ուտում, և չափազանց էժան են ձեռք բերվում:

Սրանց կողքին կան և սինթետիկ մետաքսի նոր տեսակներ, որոնց համար հարկ չի զգացվում կըտրել ծառեր և մանրացնել: Կալինինի մարզի արհեստական մանրաթելի կոմբինատում այդ մետաքսի նոր տեսակները ստացվում են քարածխի մշակումից առաջացած քիմիական նյութերից: Այնտեղ նաև նավթի մնացուկներից պատրաստվում է սինթետիկ մանրաթել, որը կոչվում է լավսան: Լավսանի թելը զգալիորեն ամուր է. երկու սանտիմետրը հաստություն ունեցող լավսանի թելից կարելի է կախել մի բարձված ապրանքատար վագոն, և թելը կդիմանա այդ հսկայական ծանրությանը:

Լավսանի մանրաթելից նույնպես պատրաստվում է արհեստական բուրդ, որը չի զիջում բնականին: Բայց չէ՞ որ ոչխարները բացի բրդից, տալիս են նաև այնպիսի արժեքավոր ու գեղեցիկ մորթի, որպիսին է կարակուլը: Դա անվիճելի է, բայց Մոսկվայի Շչերբակովի անվան կոմբինատում կապրոնի կամ անիդի թելից արդեն պատրաստում են արհեստական կարակուլ, որն իր տեսքով ու դիմացկունությամբ չի զիջում



բնական կարակուլին, բայց որը հինգից-վեց անգամ էժան է ձեռք բերվում և կարելի է արտադրել անսահման քանակությամբ: Իսկ եթե պահանջվեր մեր բոլոր կանանց ապահովել կարակուլե մուշտակներով և տղամարդկանց՝ գլխարկներով, ապա այն ժամանակ այնքան ոչխարի կարիք կզգացվեր, որոնց չէին կարողանա տեղավորել մեր բոլոր տափաստանները: Բայց գիտնականները կուրորեն չեն նմանվում բնությանը: Նրանք արդեն կարող են սինթետիկ թելերից ստանալ և այնպիսի մորթիներ, որոնք չկան բնության մեջ: Այդ նոր արհեստական մորթիները զարդագեղ են ու թեթև, կարող են լինել՝ թե վարդագույն, թե երկնագույն և գլխավորը՝ չեն վախենում ոչ ցրտից և ոչ խոնավությունից:

Այս հիանալի արհեստական մորթիների կողքին քիմիական գործարաններում օրեցօր արտադրվում են մանրաթելերի նոր, զարմանալի տեսակներ, որոնց նմանը չի ստեղծել երբեւէ բնությունը:

Օրինակ՝ էլաստիկը: Այդ նյութից գործված գուլպաները թվում է, թե կրծքի երեխայի համար են գործված, այնինչ դրանք կարող է հագնել և չափահասը, որովհետև ձգվում ու լայնանում են ոտքի չափսի համեմատ: Ահա կայծքարի մանրաթելից ստացված մի գործվածք, որից կարված անձրևանոցը ջուր չի անցկացնում անգամ ամենաուժեղ անձրևի ժամանակ:

Կապրոնի թելից հյուսված ձկնորսացանցը, կարիք չի զգում ձյութելու կամ չորացնելու: Այդ ցանցի թելերը ոչ ջուր են ծծում և ոչ էլ փթում են նույնիսկ ծովային աղի ջրի մեջ: Իսկ ճկուն ու բարակ նեյլոնե թոկը մի քանի անգամ դիմացկուն է պողպատաճոպանից:

## Պատասխանում ենք

«Պիոներ» № 11

**ԿԱՐՈ՞Ղ ԵՔ.—**



**ԳԵՏԵՐ.**—*1. Օբ, 2. Օկա, 3. Սենա, 4. Դանուբ, 5. Ամազոն, 6. Օրինոկո, 7. Հաենոս, 8. Կոնգո, 9. Թախո, 10. Դոն, 11. Պո:*

**ՍԱՀԱԴԱՇՏԸ.**—*Առանց արձանները տեղից շարժելու, սահադաշտը կարելի է երկու անգամ մեծացնել, եթե անկյուններից գծվի նոր քառակուսի:*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված հոկտեմբերիկների համար**


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀՐՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки. № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—39—06:*

*ՎՖ 09784. Պատվեր 1154. Տպաքանակ 5500: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 10 XII 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:*

Գինը 2 ռ.

# ՊԱՅՔԱՐ ՀՈԳՆԱԾՈՒԹՅԱՆ ԴԵՄ

— Ինչպե՞ս կարելի է հանգստանալ:

Ծիծաղելի հարց է, ո՞վ չգիտի ինչպես են հանգստանում: Շատ քնիր, քիչ աշխատիր, ամբողջ օրը նստիր տանը և ահա քեզ հանգիստ: Այսպես են պատասխանում ոմանք, բայց նրանք սխալվում են:

Հանգիստը ճիշտ կազմակերպելը այնպիսի լուրջ գործ է, ինչպես և լավ աշխատելը, կամ գերազանց սովորելը:

Գիտությանը հայտնի է, որ մեր օրգանիզմի ղեկավարը գլխի ուղեղն է, որը նյարդերի միջոցով գործի է դնում մեր բոլոր բջիջները: Երբ ասում ենք հոգնածություն, ապա հասկանում ենք, որ առաջին հերթին հոգնել է մեր ուղեղը:

Օրգանիզմի հոգնածության բազմաթիվ պատճառներ կան, օրինակ՝ աննպատակ ու առանց ցանկության աշխատանքը, միապաղաղ և ոչ հետաքրքիր միջավայրը, անտրամադիր գործ սկսելը և այլն:

Հոգնածությունը տանջում է, թուլացնում և եթե շարունակվում է, ապա հյուծում է մարդուն: Նրա դեմ միակ պայքարը, այդ հանգստի ճիշտ կազմակերպումն է:

Գիտնականներից ոմանք մեծ նշանակություն են տալիս «մտավոր մարմնամարզությանը»: Այսինքն, երբ մարդ վճռում է թվաբանական դժվար մի խնդիր, ապա ուղեղը հանգստացնելու համար լավ կլինի, որ կարդա գեղարվեստական մի պատմվածք, մի գեղեցիկ ոտանավոր, կամ թե ուղեղի լարված աշխատանք կատարելուց հետո, հանգստանա բակում գնդակ կամ շախմատ խաղալով:

Ոմանք սիրում են մի քանի օր կլանված, ամեն ինչ մոռացած կարդալ մի որևէ գիրք, իսկ ոմանք էլ 3—4 ժամ անընդհատ, փակված սենյակում հեռուստատեսով կինոներ դիտել. այդ վնասում է առողջությանը:

Տարին ունի 52 կիրակի օր, եթե դրանց գումարենք 60 դպրոցական արձակուրդային օրը և ամենօրյա 3—4 ժամը, երբ չենք աշխատում, ապա ստացվում է հսկայական մի ժամանակամիջոց, որի ընթացքում շատ լավ կարելի է հանգստանալ:

Հանգստի լավագույն միջոցը կիրակի օրն է: Ինչ կա ավելի դուրեկան, քան մոտակա անտառում, գետափին զբոսնելը, կոլեկցիաների համար ծաղիկներ, միջատներ հավաքելը:

Շատ հետաքրքրական է պատկերասրահներ և թանգարաններ հաճախելը: Երբ նայում ենք հայ մեծ նկարիչ Այվազովսկու ծովանկարներին, թվում է, թե գտնվում ենք ծովափին և ինչքան հետաքրքրությամբ ենք նայում, այնքան մեզ շատ են շոյում ծովի ալիքները:

Հանգստի օրը ցերեկը հաճախ պետք է օպերա գնալ: Երաժշտությունը բարձրացնում է մարդու ճաշակը, միաժամանակ մեղեդիները, պարը, բեմի արտաքին ձևավորումը հանգստացնում են:

Օրգանիզմը հանգստանում է քնի միջոցով: 7-ից մինչև 12 տարեկանները պետք է քնեն 10 ժամ, իսկ 12—15 տարեկանը՝ $8^1/_2$-ից 9 ժամ:

Խորհուրդ է տրվում հանգստի օրերին քնել մինչև 10 ժամ. ճաշից հետո կարելի է քնել մեկ ժամ, եթե այդ չի խանգարում գիշերվա քնին:

Օրգանիզմը թարմացնելու այլ միջոցներ կան՝ ամենօրյա մարզանքը, ջրաշփումները, խաղերը և այլն: Դրանց մասին կզրուցենք մի այլ անգամ:

Դասերը սովորելուց հետո օգտավետ է թերթերից և ամսագրերից կրոսվորդներ լուծել, կամ էլ զբաղվել շախմատի խաղի պարտիաների ուսումնասիրությամբ:

Ձմռանը դահուկներով սահելը և չմուշկներով խաղալը օգնում են հոգնածությունը վերացնելուն:

Միշտ հիշիր, որ հոգնած, թուլացած օրգանիզմը չի կարող դիմադրել զանազան հիվանդությունների, իսկ թարմացած, լավ հանգստացած օրգանիզմ ունեցող մարդը ոչ միայն քիչ է հիվանդանում, այլ միշտ առողջ է և կարող է աշխատել ու սովորել:

Թ. ՄՈՎՍԻՍՅԱՆ
(Բժշկական գիտությունների թեկնածու)



2 ռ.

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



ԹՈՓՉՅԱՆ ՍՈՆԻԿ (9 տարեկան) «Բնանկար»



ՇԱՀԼԱՄՅԱՆ ՀԱՍՄԻԿ (5 տարեկան)
«Աղջիկ»



ՄԱՐԳԱՐՅԱՆ ՀՐԱՉԻԿ (6 տարեկան)
«Ծաղիկներ»



ՄԱՇԻՆՅԱՆ ՌՈՒԲԵՆ (5 տարեկան)
«Ծաղիկ հավաքող»

# ԱՎՏՈԲՈՒՍ

Վ. ՏԱԼՅԱՆ

Այս ովքե՞ր են, ի՞նչ աղմուկ է.
Իրարանցում, քաշքշուկ է...
Մանուկներն են վազում կանգառ,
Նայում դես-դեն, կանչում իրար,
Թե՝ ավտոբուսն եկավ, գնանք...
— Վա՜յ, ու՜շ է, ո՜ւշ...
— Մենք կմնանք...
— Աղմկելու ի՞նչ կարիք կա,
Մեկը գնա, մյուսը կգա։ —

Իսկ ծանր ու մեծ ավտոբուսը,
Կարմիր ներկած ամբողջ դուրսը,
Եկավ կանգնեց, որ մարդ տանի
Դեպի ափը զով Սևանի։

Ա՜յ խելացի, մեծ ավտոբո՜ւս...
Լսեց աղմուկն, ասաց՝ դե՜... սո՜ւս...
Հետո դռռաց,
Հետո ճռռաց...
Մեկ էլ տեսան՝ լայն դուռը բաց.
— Ըհը՜, խնդրեմ, հերթով մտեք,
Ամեն մեկդ մի տեղ գտեք,
Ուր ուզում եք՝ այնտեղ տանեմ.
Ուրիշ էլ ի՞նչ պիտի անեմ...
Փոքրիկները մանրատոտիկ՝
Զվարթ խմբով եկան մոտիկ.
Իրենց համար ճամփա բացին.
Բոլորից շուտ ներս լցվեցին
Ու կանչեցին. — Էլ մի՛ մնա.
Մենք նստել ենք, գնա՛ գնա՜...
Ավտոբուսը... սո՜ւս... փո՜ւս... արեց,
Ծոնչալով ուժը լարեց,
Մի քիչ տնքաց,
Մի քիչ փնչաց,
Կապույտ ծուխը փչեց օդը,
Գլորեց չորս կլոր ոտը,
Խնուղիով գնաց Սևան
— Ցտեսությո՜ւն, շոգ Երևան...

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ






Վ. ԱՌԱՄՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Երկու ագռավ թռչում էին միասին։

— Ինչո՞ւ ես այդպես շտապում,— հարցրեց ագռավն ագռավին։

— Գործ ունեմ,— պատասխանեց ագռավն ու արագացրեց թևերի շարժումը։

Նրանք թռան կանաչ այգիների վրայով։ Սկզբում թռչում էին լուռ, բայց հետո ագռավը նորից հարցրեց.

— Ի՞նչ գործ է, որ այդպես թափահարում ես թևերդ։

Ագռավը, պատասխանելու փոխարեն, հարցին հարցով դիմեց.

— Դու՛ դպրոցում սովորե՞լ ես։

— Ի՞նչպես կարող էի ես դպրոցում սովորել։ Ես հո մարդ չեմ։ Բայց դա ի՞նչ կապ ունի քո շտապելու հետ։

— Կապ ունի,— կռռաց ագռավն ու ավելի ուժեղ թափահարեց թևերը։

— Չեմ հասկանում,— ասաց մյուսը և նույնպես թափահարեց թևերը,— որքան գիտեմ՝ միայն մարդիկ են դպրոց գնում, ագռավն ի՞նչ գործ ունի դպրոցի հետ։ Չեմ հասկանում։

Երբ նրանք անցան Հրազդանը, ագռավը թևերը տարածեց, իսկ քիչ հետո իջավ կաղնու կատարին։

— Ներիր, բարեկամ,— ասաց մյուսը,— հետաքրքրությունս ստիպում է ինձ իջնել քո ծառին։ Ես այդպես էլ չհասկացա, թե ի՞նչ կապ կարող է լինել քո և դպրոցի միջև։

— Ես ուզում եմ գրել-կարդալ սովորել։

— Անհնարին է, ի՞նչ քամի է մտել գլուխդ։ Բարի գիշեր, բարեկամս,— ծիծաղեց ագռավն ու թռավ-հեռացավ։

Նա ապրում էր ուրիշ այգում։

Իրիկունն իջավ, մթնեց։ Ագռավը քնեց։ Քնեց նաև այգին։

Հաջորդ օրը ագռավները նորից միասին քաղաք էին վերադառնում։ Արևը թեքվում էր մայրամուտ։

— Ի՞նչ եղավ, սովորեցի՞ր։

Ագռավը չպատասխանեց։ Լուռ թռչում էր։

— Ինչո՞ւ ես լռում, ի՞նչ է պատահել, քա՞ր են նետել վրադ։

— Ոչ, մտածում եմ, հասկանում ես, մտածում եմ, թե կարո՞ղ եմ սովորել:
— Ինչ է, վախենո՞ւմ ես:
— Այո, վախենում եմ, գնանք ես քեզ ցույց տամ, թե ինչպես է սովորում փոքրիկ Կարինեն:
Նրանք թռան քաղաքային շուկայի վրայով, անցան միլիցիայի բաժանմունքը և իջան մի նեղ, փոքրիկ բակում կանգնած միակ ծառի ճյուղին: Ծառի տակ նստած էր փոքրիկ Կարինեն՝ այբբենարանը ձեռքին:
— Լսիր, թե ինչպես է սովորում:
— «Դ» մեծատառ, «դ» փոքրատառ,— ասում էր Կարինեն:
Ագռավները լռությունները լսեցին:
— «Դ» մեծատառ, «դ» փոքրատառ...
— Նա միշտ նույն բանն է կրկնում:
— Այո,— ասաց ագռավը:
— Այս հետաքրքիր չէ,— ասաց ագռավը,— ես ձանձրանում եմ, գնանք:
Ագռավը դեռ խոսքը չէր վերջացրել, Կարինեն գիրքը մի կողմ դրեց, բարձրացավ տեղից, կավիճով գծեր քաշեց գետնին և մի ոտքի վրա ցատկոտելով սկսեց բղավել.
— «Դ» մեծատառ, «դ» փոքրատառ:
— Հետո՞,— բարկացավ ագռավը,— հետո ի՞նչ, «Դա» մեծատառ, «դա» փոքրատառ:
— Դու դասդ պիտի սովորե՞ս, թե չէ,— ձայն տվեց Կարինեի մեծ քույրը:
Բարկացավ նաև մայրիկը և սաստեց Կարինեին, որ միայն դասի վերնագիրն էր կարդում: Կարինեն խաղը թողեց:
— «Դ» մեծատառ, «դ» փոքրատառ, փոքրա...— սրտնեղած կրկնում էր Կարինեն:



— Է, եթե այսպես պիտի սովորեմ, լավ է դպրոց չգնամ:
— Ինձ թվում է,— ասաց ագռավը,— դասի այս մասն ամենից դժվարն է, որ Կարինեն չի կարողանում սովորել:
— Գուցե,— նկատեց ագռավը,— բայց այս շաբաթվա ընթացքում ես արդեն անգիր գիտեմ Կարինեի դասը, ուզո՞ւմ ես ասեմ:
— Ասա.
— «Դա» մեծատառ, «դա» փոքրատառ,— արտասանեց ագռավը:
— Լավ է: Դու ընդունակ ես, բարեկամ:
— Այ, եթե մի բան էլ սովորեմ հաջորդ շաբաթվա ընթացքում...
Այդ պահին Կարինեն մի անգամ էլ կրկնեց վերնագիրը և գիրքը դրեց ներքև:
— Տեսա՞ր:



— Տեսա, գնանք, բարեկամս, գնանք, այս տառը մենք արդեն գիտենք:

— Դա՛, դա՛, Կարինե, — բացականչեց տառը:

— Դա՛, դա՛, դա՛, — կրկնեց մյուսը, — մնաս բարո՛վ, Կարինե:

Աղավնիները թռան շուկայի վրայով և գնացին: Մութն ընկավ, Կարինեն գիրքը դրեց պայուսակի մեջ և պառկեց քնելու: Քունը չէր տանում, նրան թվաց, թե աղավնիները նորից նստել են ծառին և ծիծաղում են իր վրա:

— Դա՛, դա՛, դա՛, բարի գիշե՛ր, Կարինե:— Հանկարծ լսեց Կարինեն, նայեց մթնած պատուհաններին և ինքն էլ շլմացավ, թե ինչպես կրկնեց.

— «Դ» մեծատառ, «դ» փոքրատառ:

— Բարի գիշե՛ր, Կարինե:





# ԹՄԲՈՒԿԸ

(Ըստ Է. Օստրովսկայայի)

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Մի օր որդին
Ասաց հորը.
— Մեր խանութում
Անցած օրը
Պիոներական
Թմբուկ տեսա:
Բա ե՞րբ կառնես,
Հայրիկ, ասա:
— Ուրախությամբ
Կառնեի ես.
Բայց գիտես ինչ՝
Պարզ ասեմ քեզ.
Երբ թմբուկը
Մեր տուն բերվի՝
Իմ հանգիստը
Կխանգարվի...
—Ոչ, հայրիկ ջան,—
Որդին ասաց.—
Չեմ խանգարի,
Դու հանգիստ կաց.
Կհարվածեմ
Թմբուկը ես,
Երբ որ քնած
Դու կլինես...



# Խնձորները

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ



Ամեն օր դպրոց գնալիս Վարուժանը կանգ էր առնում Սիմոն պապի այգու մոտ։

Օ՜, ի՜նչ խնձորներ էին՝ կարմիր ու դեղին թշիկներով։ Նայում էր Վարուժանը, մոռանում դպրոցը և սկսում էր մագլցել բարձր պարիսպը։

Եվ ահա մի օր Վարուժանը դասարան մտավ պատռված շորերով։ Ընկեր Համիկը դիտողություն արեց, իսկ փոքրիկ Աստղիկը վերցրեց ասեղն ու թելը և կարեց պատռված տեղերը։

Հաջորդ օրը Վարուժանը դասարան մտավ ձեռքերը արյունլվիկ դարձրած։

Դասարանի սանիտարը՝ Արևիկը, կապեց ձեռքը։

Երրորդ օրը Վարուժանը դասից ուշացավ։ Իսկ դասամիջոցին Վա-

րուժանը, Արմենն ու Տիգրանը շատ փափսացին։

Ընկեր Համբիկը նկատեց։

Մյուս օրը Վարուժանը, Արմենն ու Տիգրանը պայուսակներից խընձորներ հանեցին ու առատ-առատ բաժանեցին ընկերներին։

Ընկեր Համբիկը այդ էլ նկատեց։

Դասն սկսվել էր. դասարանում լռություն էր. բոլորը գրում էին, իսկ գրատախտակի մոտ, պատի տակ կանգնած էին Վարուժանը, Արմենն ու Տիգրանը։ Նրանք դողում էին հուզմունքից, ամոթից ու ամեն մեկը մտածում էր, թե ո՞վ հայտնեց ընկեր Համբիկին։

— Ով գողացած խնձոր ուտի, ուսուցչի աչքերին նայելիս, խնձորի նման կկարմրի, — ասաց ընկեր Համբիկը։

Դասարանում լռություն էր, բոլորը գրում էին, իսկ Վարուժանն, Արմենն ու Տիգրանը կանգնած էին գրատախտակի մոտ, խնձորի նման կարմրած թշերով։



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ



## ԹԻԹԵՌՆ ՈՒ ԹՐԹՈՒՐԸ

Հ. ՍԵՎԱՆ

Մի օր թիթեռն ասաց. — Թրթուր,
Գնա հեռու, ես ո՞ւր, դու ուր,
Քեզ սազում է խոնավ հողը,
Ինձ՝ երկինքը ու վառ շողը։
Պատասխանեց թրթուրն այսպես.
— Հերիք փքվես դու քեզ ու քեզ,
Թրթուր էիր դու էլ ինձ պես...






Ռազմիկը շատ լավ գիտեր, որ կրակի, լուցկու հետ խաղալ չի կարելի. վտանգավոր է։ Այդ մասին մայրիկը նրան շատ էր ասել։

Սակայն մի օր Ռազմիկը մտածեց, թե ի՞նչ կլինի, որ մի անգամ հայրիկի պես իսկական գլանակ ծխի…

Մայրիկը խիստ զբաղված էր։

Ռազմիկը վերցրեց լուցկու լիքը տուփը ու մի հատ էլ գլանակ, արագ ծլկեց փայտանոց։ Թաքնվելով փայտերի, հատակի հին նավթաշորերի ու նավթով լի ամանի արանքում, ուզեց վառել ծխախոտը։ Վառեց լուցկին, ծխախոտը չայրվեց։ Երկրորդը վառեց, դարձյալ չայրվեց։ Ռազմիկը զայրացավ.

— Էս ի՞նչ տեսակ ծխախոտ է։

Ու վառելով լուցկու մի հատիկը մոտեցրեց տուփի մեջ եղած լուցկիներին։ Լուցկիները բռնկվեցին։ Ռազմիկը սարսափահար շպրտեց վառվող տուփն էլ, ծխախոտն էլ և գաղտագողի դուրս գալով փայտանոցից, ամուր ծածկեց դուռը…

Քիչ հետո, երբ ճաշում էին, հայրիկը անհանգիստ շարժումներ էր անում։

— Այս ի՞նչ է. մեկ ծխի հոտ է գալիս, մեկ՝ նավթի։

— Ծխի հո՞տ… նավթի հո՞տ, — կրկնեց մայրիկը։ — Ես էլ եմ զգում։ Բայց որտեղի՞ց կարող է գալ։

— Հրդե՜հ… հրդե՜հ… Ջո՜ւր… ջո՜ւր… — աղմկելով տներից դուրս վազեցին հարևանները։

Այրվում էր Ռազմիկենց փայտանոցը։ Մի քանի րոպե էլ՝ և կայրվեին թե՛ Ռազմիկենց տունը, թե՛ հարևանների։

— Այս ի՞նչ փորձանք էր, — ծնկներին տալով սենյակից դուրս վազեց Ռազմիկի մայրիկն ու մոլորված մնաց տեղում կանգնած։





Ռազմիկը զարմանքից աչքերը լայն բաց արած՝ հրդեհին էր նայում և մտածում՝ տեսնես, ինչի՞ց եղավ... ծխախոտի՞ց... ախր չայրվեց։ Լուցկո՞ւց... Փոքրիկ լուցկուց այսքան մեծ կրա՞կ... ու արցունքն աչքերին, մեղավորի պես աղերսող հայացքով նա մերթ մայրիկին էր նայում, մերթ հայացքն ուղղում հայրիկի բարկացած ձայնի կողմը, որ հեռախոսով «ալլո՛», «ալլո՛» էր գոչում։

Հայրիկի զանգից մի քանի րոպե հետո եկավ հրշեջ խումբը և հանգցրեց հրդեհը։

Խմբի տեսուչը արձանագրելով դեպքը՝ հայրիկին հարցրեց.

— Գուցե փայտանոցում անզգուշաբար ծխախոտի մնացո՞րդ եք շպրտել։

Ռազմիկն այլայլված քարացավ տեղում.

— Ծխախո՞տ...— մի շնչով բացականչեց նա և սկսեց կմկմալ.— Ծը... խա... խո՞տ... ախր, հանգած էր... չայրվեց... լուցկին... միայն... միայն լուցկին... բայց... բայց լուցկին...



Տեսուչը ուշադիր նայեց Ռազմիկին։

Ռազմիկը մի պահ իրեն կորցրեց, ապա կայծակի արագությամբ նետվեց դեպի մայրիկը, ու դեմքը թաքցնելով նրա փեշերի տակ, սկսեց հեկեկալ և աղեկտուր ձայնով կրկնել.

— Էլ չեմ անի... մայրի՛կ, ներողությո՛ւն... ներողությո՛ւն... եթե մեկ էլ անեմ... եթե մեկ էլ... ազնիվ խոսք... եթե մեկ էլ անեմ... ներողություն, մայրիկ ջան...

Հրշեջ խմբի գնալուց հետո մայրիկն ու հայրիկը պատժեցին Ռազմիկին։ Պատժեցին և այն էլ ինչպե՜ս...

Մինչև ուշ երեկո քամին լուսամուտից բերում էր մոխրացած փայտանոցի ածխային հոտը։





## ԱՂՄՈՒԿ

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Ի՞նչ աղմուկ է, աղաղակ.
Ճյուղին նստեց մի մոծակ.
Ճյուղը ճաքեց նրա տակ.
Ահա ինչու անտառում
Աղմուկ է և աղաղակ։

## ՆԱԽԱՆՁ

Իր ծննդյան տոնի օրը
Գորտը տխուր ասաց մորը.
— Մայրիկ, ինչո՞ւ ծնված օրից
Ո՛չ ոք, ոչ ոք չի սիրում ինձ։
Պատասխանեց մայրը գորտին.
— Շատ է սիրուն հագիդ մորթին,
Գազանները չար են, անկարգ,
Նախանձում են քեզ միշտ նրանք։

## ԻՆՉՈ՞Ւ

Փոքրիկ Գագիկը կանգնել է փողոցում ու բարձր լաց է լինում։

— Ինչո՞ւ ես լալիս,— հարցնում են անցորդները։

— Որովհետև բոլոր երեխաները արձակուրդ կունենան, իսկ ես չեմ ունենա։

— Իսկ ինչո՞ւ դու արձակուրդ չես ունենա։

— Որովհետև ես դեռ դպրոցում չեմ սովորում։

## Ջավենը

— Ըհը՛, ըհը՛, ըհը՛,— լաց լինելով փոքրիկ Ջավենը մտավ տուն։

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց մայրը։

— Էն Գուրգենը ինձ ասում է՝

Փնթի Պետի,
Մտնես գետին։

— Էլ ինչո՞ւ ես լաց լինում, դու էլ իրեն ասա։

— Ը՛ը, ըհ՛ը, ես ասում եմ, բայց չի հավատում,— լաց լինելով պատասխանեց Ջավենը։

ԳԵՐԱՍԻՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ
(Ստեփանակերտ)

# ՄՐՋՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՄՈՒՐՋԸ

(Որսորդ Միսակի պատմածից)

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Շատ է լինում, որ նստում ես մի քարի կամ մեկնվում թփի հովին ու, շուրջդ խաղաղ, մեղուների բզզոցին ես ականջ դնում:

Մի անգամ հենց էդպես առվի ափին նստած, հրացանս գոգիս՝ հանգստանում էի, աչքս ընկավ մի մրջյունի, որ խոտի ցողունով բարձրանում էր վեր: Բարձրացավ, հասավ ծայրին, տեսավ ցողունը կռացած է առվի վրա, թողեց ետ գնաց: Քիչ հետո երկուսով եկան, երևի մեկն ընկերն էր: Էլի գնացին, խոտի ծայրը հասան: Խոտը շարժվեց ու գլուխը ավելի խոնարհեց առվի վրա: Էդ որ զգացին, վազելով ետ գնացին, կորան խոտերի մեջ ու, քիչ անց, մի ութը-տասը ընկերներով ետ եկան, եռանդով բարձրացան շյուղի ծայրին ու կուտակվեցին էնտեղ: Որ կուտակվեցին, դրանց չնչին ծանրությունից ճյուղի գագաթը կռացավ, քիչ մնաց հասնի ջրին: Մեկը ետ գնաց, ու քիչ հետո դրա հետևից եկան հարյուրավոր մրջյուններ: Տեղ հասան ու կռացրին խոտի ծայրը:

Առվի մյուս ափին մի ուրիշ խոտ նույնպես գլուխը խոնարհել էր առվի վրա: Խմբով կախվել էին իրենց ցողունի ծայրից, ցած էին կռացնում. երևի ուզում էին դիմացի ցողունին հասնեն... Քիչ էր մնացել, որ հասնեին, համա ուժները չէր պատում: Բայց իսկի կհուսահատվե՞ն որ...

Հիմի հավաքվել են, քիթ-քթի տվել, խորհրդակցում են: Երևի ուզում են առուն անցնեն, քոչո՞ւմ են, թե՞ լավ կերի տեղ գիտեն մյուս ափին: Առու էլ ասում եմ, մի բահ ջուր է: Բայց նրանց համեմատությամբ, ոնց որ Հրազդան գետը մեզ համար: Ի՞նչ անեն խեղճերը, ոչ լաստ ունեն, ոչ՝ նավակ... Բայց, մեկ է, մրջյունը, որ մտքումը դրեց մի բան անել, պիտի անի: Տեսան, որ իրենց կամուրջների ծայրերը իրար չեն հասնում, տես, թե ինչ արին էդ խելացի արարածները: Իրար ոտներից գրկելով, շղթա տվին, կախվեցին դեպի դիմացի ցողունը, կախվեցին ջրի վրա, շղթան կտրվեց, ու մի քանի մրջյուն ընկան ջուրը: Հոսանքը իսկույն տարավ նրանց, բայց էլի չհուսահատվեցին, կախվեցին իրար ոտքերից, էլի զոհեր տվին, էլի կախվեցին, մինչև որ շղթայի ծայրը հասցրին էն ափի ցողունին: Դառավ կենդանի կամուրջ՝ կազմված իրենց մարմիններից... Ու դրանց ամբողջ ցեղը մյուս ափն անցավ էդ կամուրջի վրայով...



# Ձագուկը

Ա. ԱԴԱՄՅԱՆ

Նկ. Ա. ՄԱՇԻՆՅԱՆԻ

Առավոտ էր։ Տան դիմացի այգում նստել զրուցում էինք, իսկ փոքրիկ Անահիտը գիրք էր կարդում։

Հանկարծ մեր ուշադրությունը գրավեց պատի ճեղքից մայր ճրնճղուկի և նրա ձագուկի ուրախ ծլվլոցը։

Մայր ճնճղուկն իր ձագին բնից հանել, թռչել էր սովորեցնում։ Ինքը՛ն առջևից էր ցատկում, իսկ ձագը ետևից։ Երբեմն նա էր ընկնում մայր ճնճղուկը և հետևում ձագուկի թռիչքներին։

Մի քանի պտույտ գործելուց հետո, ձագը հոգնեց և հանկարծ քարի նման ընկավ գետին, սկսեց թփրրտալ։ Անահիտը մի կողմ դրեց գիրքը, վեր կացավ, վազեց, բռնեց նրան և բացականչեց.

— Ինչքա՜ն փոքրիկ է, ինչքա՜ն գեղեցիկ։

Ձագը նրա ափի մեջ սկսեց դողալ և ծվծվալ, կարծես աղերսում էր ազատել։

Նրա ծլվլոցը լսեց ճնճղուկը։ Նա սկսեց Անահիտի գլխի վերևը պտըտվել, ծվծվալ, ջղաձգորեն կտուցը բաց ու խուփ անել։ Այդ տեսնելով, Անահիտը վախեցած թեքվեց մի կողմ և ասաց.

— Վա՜յ, վա՜յ, ուզում ես կտցե՞լ ինձ։ Ախր ես քո ձագին ոչինչ չեմ անի։

Իսկ մայր ճնճղուկը շարունակում էր թռչել և պտույտներ գործել Անահիտի շուրջը։ Աղջիկը մի քանի անգամ ձագին սեղմեց կրծքին, շոյեց նրա գլուխը, ապա բաց թողեց։ Ձագուկը թռավ վեր և մոր հետ ուրախ ծլվլալով մտավ բույնը։





# ՆԱՊԱՍՏԱԿՆ ՈՒ ՎԱԳՐԸ

(Հնդկական ժողովրդական հեքիաթ)

Անտառում մի վագր կար։ Երկար տարիներ նա կենդանիներ ու գազաններ էր որսում և ահ ու սարսափ տարածում չորս բոլորը։ Իսկ երբ ծերացավ ու էլ չէր կարողանում որսի դուրս գալ, կանչեց իր մոտ բոլոր գազաններին ու ասաց.

— Ճիշտ է, ես ծերացել եմ, բայց դեռ իմ ատամներն ու ճանկերն ուժեղ են։ Եվ վա՜յ նրան, ով կհամարձակվի չկատարել իմ պահանջը։ Սրանից հետո ամեն օր ձեզնից մեկն ու մեկը պետք է գա ինձ մոտ, որ ես նրան ուտեմ։

Գազանները տխրեցին, բայց ճար չկար, ի՞նչ կարող էին անել։ Ամեն առավոտ վագրը մեկին ուտում էր ու կշտանում։ Լացն ու կոծն ընկել էր անտառը. օր-օրի գազանների թիվը պակասում էր։

Անտառում ապրում էր մի նապաստակ։ Նա տեսավ, որ գազանները՝ անծպտուն գնում, ոչնչանում են, որոշեց մի լավ դաս տալ վագրին։ Երբ այդ մասին ասաց գազաններին, նրանք ծիծաղեցին.

— Էդ ի՞նչ է խելքիդ փչել, ա՜յ շլդիկ, չէ՞ որ վաղը հենց ինքդ ես գնալու վագրի մոտ։ Ավելի լավ է մահից առաջ աղոթք անես։

Նապաստակը ոչինչ չասաց, ետ





դարձավ իր բույնը։ Երբ եկավ վագրի մոտ գնալու ժամանակը, նա չգնաց։ Վագրը կատաղեց։ Առաջին անգամն էր, որ նա այդքան ժամանակ սոված էր մնում։

Մյուս օրը նապաստակը վեր կացավ ու կամաց-կամաց գնաց վագրի մոտ։ Վագրը նրան տեսավ թե չէ, ահռելի ձայնով գոռաց.

— Փուչ կենդանի, երեկ դու ինչու՞ չեկար։ Քո պատճառով ես սոված մնացի։

— Ո՛վ ամենակարող վագր, երեկ հենց որ իմացա ինձ կանչել ես, շտապեցի քեզ մոտ։ Բայց տես, թե ինչ փորձանքի հանդիպեցի։ Հանկարծ իմ դեմ ելավ մի ուրիշ վագր՝ ճիշտ քեզ պես ուժեղ ու ահավոր։ Նա բռնեց ինձ և ամբողջ օրը բաց չթողեց։ «Ոչինչ,— ասում է,— քո քոսոտ ու վախկոտ վագրը առանց ուտելու էլ յոլա կգնա»։ Քի՛չ առաջ մի կերպ ծլկեցի այնտեղից ու վազեցի քեզ մոտ։

Վագրը զազազած վեր թռավ տեղից ու մռնչաց.

— Որտե՞ղ է այդ հանդուգն պարծենկոտը, ցույց տուր ինձ նրան։

— Տեր արքա, նա հենց էս մոտերքում, ջրհորում է ապրում։

— Դե շուտ գնանք այնտեղ, ես նրա հետ հաշիվներս մաքրեմ։

Ու նրանք գնացին։ Երբ հասան ջրհորին, նապաստակն ասաց.

— Ըհը, տե՛ս, որտեղ է թաքնվել։

Վագրը նայեց ջրհորի մեջ, տեսավ ինչ. իրեն է նայում մի ուրիշ վագր և ժանիքներն է ցույց տալիս։ Գազանը բոլորովին կատաղեց, նետվեց ջրհորը և խեղդվեց։

Այնպես որ, շատ անգամ նապաստակն էլ կարող է խաբել վագրին։

Ռուսերենից թարգմանեց՝ Ս. ՄԿՐՏՉՅԱՆ



Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

## ԵՐԿՈՒ ՇԼԴԻԿ



Մի օր երկու նապաստակ
Գինի գտան ծառի տակ։



Երբ խմեցին, հարբեցին,
Անվախ առյուծ կտրեցին։



Մեկ էլ եկավ մի բաջ մուկ.
— Ի՞նչ եք անում այստեղ դուք...









Թողած գինի ու սեղան,
Շլդիկները, պո՛ւկ. փախան։




## ՈՎ Ո՞ՒՄ Է ԶԱՆԳԱՀԱՐՈՒՄ

Խիստ զարմացել է շլդիկը.
Արդյոք փի՞ղն է իրեն զանգում։
Շփոթված է և մկնիկը.
Ասես թե գորտն է աղմկում։
Զայրացել է մեր շնիկը.
— Այդ ո՞վ է ինձ զանգում արդյոք։
Փոթկացնում է ոզնին մեկ էլ.
— Օ՜ֆ, գլուխ չի հանի ոչ ոք...
Պետք է օգնել ու որոշել՝
Ով ո՞ւմ հետ է ուզում խոսել։












